## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ:

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով:

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը: Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը: Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները:

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորյակների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից:

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը:

Սույն պահանջները խախտողների հոդվածները չեն տպագրվի: Ներկայացված հոդվածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հապավումներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում:

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում:

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

3
ՄԱՐՏ 1977
ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 Թ.
ИЗДАЕТСЯ С 1922 Г.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
«Ленинян угнов» («По ленинскому пути»)—теоретический и политический журнал ЦК КП Армении

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ









# ՍՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵՈՒՄ

**ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն քննարկեց «ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների կատարման առնչությամբ կուսակցության Կրասնոդարի երկրկոմի կազմակերպչական ու քաղաքական աշխատանքի մասին» հարցը:**

Ընդունված որոշման մեջ նշված է, որ կուսակցության Կրասնոդարի երկրկոմը զգալի աշխատանք է կատարում ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների, համագումարում տրված զեկուցման մեջ և Կենտկոմի 1976 թվականի հոկտեմբերյան պլենումում արտասանած ճառում ընկեր Լ. Ի. Բրեժնևի առաջ քաշած դրույթների ու խնդիրների կենսագործման ասպարեզում:

Կուսակցության երկրկոմի՝ որպես քաղաքական ղեկավարման մարմնի, ջանքերը կենտրոնացվում են երկրի խոշոր շտեմարանի՝ Կուբանի զարգացման, հնգամյակի առաջադրանքների կատարման, աշխատավորների կոմունիստական դաստիարակության հանգուցային պրոբլեմների վրա: Այդ պրոբլեմների լուծման ուղիները ավելի ու ավելի մեծ ակտիվությամբ են քննարկվում կուսակցական կոմիտեների պլենումներում ու բյուրոների նիստերում, կուսակցական ու բանվորական ժողովներում, գիտագործնական կոնֆերանսներում:

Կուսակցական ակտիվի, գիտնականների, մասնագետների, առաջավոր բանվորների ու կոլտնտեսականների մասնակցությամբ երկրամասում մշակվել և կենսագործվում են 1976—1980 թվականների համար նախատեսված՝ ձեռնարկությունների տեխնիկական վերազինման, գիտության ու պրակտիկայի նվաճումների արմատավորման, արտադրանքի որակի բարձրացման, ժողովրդական սպառման ապրանքների թողարկման ավելացման ծրագրերը:

Երկրկոմը բարձրացնում է ՍՄԿԿ քաղկոմների ու շրջկոմների, սկզբնական կուսակցական կազմակերպությունների, սովետական ու տնտեսական կադրերի դերն ու պատասխանատվությունը աշխատանքի արդյունքների համար, ուժեղացրել է կատարման վերահսկողությունն ու ստուգումը: Երկրկոմի քարտուղարները, բյուրոյի անդամները, ապարատի աշխատողները սիստեմատիկաբար ուսումնասիրում են տեղերում տիրող դրությունը, օգնություն ցույց տալիս կուսակցական կազմակերպություններին: Մեծ ուշադրություն է նվիրվում կոմունիստների ճիշտ տեղաբաշխմանը, մասսաների շրջանում կուսակցական ազդեցության ուժեղացմանը: Անցյալ տարի ստեղծվել են 177 նոր սկզբնական, 699 արտադրամասային կուսակցական կազմակերպություններ ու խմբեր:

Գյուղում բերքահավաքին մասնակցող տրանսպորտային օղակներում գործում էին երեք հազար ժամանակավոր կուսակցական խմբեր: Լայնորեն ծավալելով XXV համագումարի նյութերի պրոպագանդումը և ուսումնասիրումը, կուսակցական կոմիտեները և սկզբնական կուսկազմակերպությունները բարելավել են աշխատավորների քաղաքական լուսավորության, տնտեսագիտական կրթության, բնակչությանը ինֆորմացիա տալու գործի դրվածքը: Աճել է ղեկավարների և մասնագետների մասնակցությունն այդ աշխատանքին:

Երկրամասում ստեղծված է քաղաքական ու աշխատանքային բարձր ակտիվության մթնոլորտ: Մասսայական բնույթ է ստացել յուրաքանչյուր աշխատատեղում աշխատանքի արդյունավետության ու որակի բարձրացման հա-

մար ծավալված սոցիալիստական մրցությունը, ընդլայնվել է հանդիպական պլանների ընդունման պրակտիկան, առաջավոր շատ բանվորներ ու կոլեկտիվներ մոսկվացիների օրինակով պայքարի մեջ են մտել հնգամյակի երկու տարվա առաջադրանքները մինչև մեծ Հոկտեմբերի 60-րդ տարեդարձը կատարելու համար: Ավելի քան 900 ձեռնարկություններ, կառույցներ, կոլտնտեսություններ ու սովխոզներ ստեղծագործական համագործակցության պայմանագրեր են կնքել գիտահետազոտական, նախագծային-կոնստրուկտորական հիմնարկների ու բուհերի հետ:

Երկրկոմը գործուն կերպով է արձագանքում նորին, պաշտպանում է արժեքավոր ձեռնարկումները, հանդես է գալիս օգտակար նախաձեռնությամբ: Կուբանի արդյունաբերության ու գյուղատնտեսության մեջ հետևողականորեն կիրառվում է արտադրության մասնագիտացման ու համակենտրոնացման կուրսը, գործում են ավելի քան երեք հարյուր միջտնտեսային և ագրոարդյունաբերական ձեռնարկություններ ու միավորումներ: Երկրկոմը ընդհանրացրել և տարածում է գյուղատնտեսական արտադրանքի որակի բարձրացման՝ ՍՄԿԿ Եյսկի և Կանևսկի շրջկոմների կազմակերպչական աշխատանքի փորձը, երիտասարդության հայրենասիրական դաստիարակության Նովոռոսիյսկի քաղկոմի փորձը: Ժողովրդատնտեսական մեծ նշանակություն ունեն Մերձազովյան ճահճուտների յուրացման, ոչ սևահողային գոտու մարզերին շեֆական օգնություն ցույց տալու, ցեմենտի գործարանների վերակառուցման, Սոչիի առողջարանի զարգացման վերաբերյալ երկրամասային կոմիտեի առաջարկությունները:

Երկրամասում հաստատակամորեն է լուծվում գյուղատնտեսության զարգացման կենտրոնական խնդիրը՝ հացահատիկի արտադրության ավելացումը:

Օգտագործելով գիտության նվաճումները, առաջավոր կոլեկտիվների, բարձր բերքի վարպետներ Մ. Ի. Կլեպիկովի, Վ. Յա. Պերվիցկու, Բ. Ա. Պոնոմարենկոյի, Վ. Ա. Կոլեսնիկովի և մյուսների փորձը, երկրկոմը, Ադիգեական մարզկոմը, ՍՄԿԿ քաղկոմներն ու շրջկոմները, սկզբնական կուսակցական կազմակերպությունները նպատակասլաց աշխատանք են տանում հողագործության կուլտուրայի բարձրացման համար: Կոլտնտեսություններում ու սովխոզներում յուրացվել են ճիշտ ցանքաշրջանառություններ, արմատավորվել են կուբանցի սելեկցիոներների ստացած հացահատիկային կուլտուրաների բարձր բերքատու սորտեր ու հիբրիդներ, բարելավվել է դաշտերի մշակության որակը: Կարճ ժամկետում երկրամասում ստեղծվել է արդյունաբերական հիմքի վրա բրնձացանության բազա:

Հանդես գալով հնգամյակի առաջին տարում հացահատիկի արտադրությունը և պետությանը դրա վաճառքն ավելացնելու համամիութենական սոցիալիստական մրցության նախաձեռնությամբ, երկրամասային կուսակցական կազմակերպությունը կազմակերպչական ու քաղաքական մեծ աշխատանք կատարեց, կոմունիստներին, բոլոր աշխատավորներին պայքարի հանեց հացի համար:

Հայրենիքի շտեմարանները լցվեց 4.425 հազար տոննա հացահատիկ, որն զգալիորեն գերազանցում է գնումների սահմանված ծավալը և նախկինում ստանձնած պարտավորությունները: Մթերված ցորենի երկու երրորդը կազմում են ուժեղ և արժեքավոր սորտերը: Անեցվեց նաև շաքարի ճակնդեղի, բանջարեղենի, պտուղների և թեյատերևի բարձր բերք: Կատարվեցին պետությանը բուսաբուծական ու անասնապահական մթերքների հիմնական տեսակների վաճառքի պլանները: Կուբանցիների նախաձեռնությունը լայն պաշտպանություն գտավ և կարևոր դեր խաղաց հացահատիկի բերքահավաքը հաջողությամբ անցկացնելու և երկրում հացահատիկի գնումների պլանը կատարելու գործում:

1976 թվականին երկրամասի բոլոր արդյունաբերական ձեռնարկությունները կատարեցին արտադրանքի իրացման և նոր տեխնիկայի արմատավորման պլանները: Թողարկվեց 105 միլիոն ռուբլու լրացուցիչ արտադրանք, գերակատարվեցին արտադրանքի ինքնարժեքի իջեցման, աշխատանքի ար-



տադրողականության բարձրացման առաջադրանքները: Գլխավոր հատակագծերի և շրջանային հատակագծման սխեմաների հիման վրա բարեկարգվում են քաղաքները, շրջկենտրոններն ու ստանիցաները: Կատարվել են մանրամասն պրանքաշրջանառության և կենցաղային սպասարկման պլանները:

Դրա հետ միասին, ինչպես նշված է որոշման մեջ, ՍՄԿԿ երկրկոմը դեռևս չի հասել այն բանին, որ երկրամասային կուսակցական կազմակերպությունը կոմպլեքսային կարգով լուծի XXV համագումարի առաջադրած բարդ և բազմապլան առաջադրանքները, ապահովելով երկրամասի էկոնոմիկայի բոլոր ճյուղերի դինամիկ զարգացումը: Դրա հետևանքով Կուբանի բնական հարուստ ռեսուրսները, նրա հողակլիմայական բարենպաստ պայմանները բավականաչափ լրիվ չեն օգտագործվում: Կուսակցական, սովետական և տնտեսական մարմինները հարկ եղած հաստատակամությունը չեն ցուցաբերում, որ ընդհանուր պահանջը՝ արդյունավետության ու որակի բարձրացումը, կոնկրետ միջոցառումների և պրակտիկ գործերի վերածվի աշխատանքի բոլոր տեղամասերում, յուրաքանչյուր աշխատանքային կոլեկտիվում:

Դանդաղ է իրականացվում սննդի ճյուղերի տեխնիկական վերազինումը, որոնց ընկնում է երկրամասի ամբողջ արդյունաբերական արտադրանքի մոտավորապես կեսը: Այս բնագավառում ցածր է աշխատատար պրոցեսների մեքենայացման մակարդակը, մեծ թվով բանվորներ զբաղված են ձեռքի աշխատանքով:

Մեքենաշինության և մետաղամշակության շատ ձեռնարկություններ անհամաչափ են աշխատում, չեն կատարում արտադրանքի կոոպերացված մատակարարումների և արտադրանքի առաջադրանքները: Մի շարք գործարաններում ու ֆաբրիկաներում թույլ են յուրացվում արտադրական կարողությունները:

Երկրամասում առկա հնարավորություններից զգալիորեն դանդաղ, անկայուն կերպով է զարգանում անասնապահությունը, թույլ են տրվում անասունների ու թռչունների գլխաքանակի և մթերատվության անկումներ, միջոցներ չեն ձեռնարկվում կերի կայուն բազա ստեղծելու համար: Խորությամբ չի վերլուծվում կոլտնտեսությունների ու սովխոզների տնտեսական գործունեությունը, մեծ թվով տնտեսություններում արտադրության շահութաբերությունը ցածր է, բարձր է արտադրանքի ինքնարժեքը, չեն կատարվում պետությանը միս, կաթ և այլ մթերքներ վաճառելու պլանները:

Կուսակցական կոմիտեները աչքաթող են անում կապիտալ շինարարության ղեկավարման որոշ սկզբունքային հարցեր: Շարունակվում է միջոցների փոշիացումը, ետ է մնում շինարարական ինդուստրիայի ձեռնարկությունների զարգացումը, խախտվում են արտադրական օբյեկտների գործարկման ժամկետները, սիստեմատիկաբար չեն իրացվում բնակարանային և կուլտուր-կենցաղային շինարարության հատկացումները: 1976 թվականին շահագործման չհանձնվեցին ավելի քան 300 հազար քառակուսի մետր բնակելի մակերես, 3.600 տեղով դպրոցներ, 3.100 տեղով նախադպրոցական հիմնարկներ: Երկրամասում դանդաղ է զարգանում սպասարկումների ոլորտը: Կազդուրիչ առողջարանային գոտում չեն բավականացնում ճաշարաններն ու սրճարանները, հարկ եղած տարածումը չեն ստացել սպասարկման առաջադիմական ձևերը:

Կուսակցության երկրկոմի գաղափարական գործունեության թույլ բնագավառն է մնում մարդկանց բարոյական դաստիարակությունը: Այդ աշխատանքը հաճախ կատարվում է առանց խորապես ուսումնասիրելու բացասական երևույթների պատճառները: Հակաբարոյական արարքներ թույլ տվող և իրավախախտումների հակված անձինք հաճախ դուրս են մնում հասարակական ազդեցության ոլորտից:

ՍՄԿԿ երկրկոմը, Ադիգեյական մարզկոմը, քաղկոմներն ու շրջկոմները միշտ չէ, որ սկզբունքայնություն և հաստատակամություն են ցուցաբերում եղած թերությունները, կուսակցական ու պետական կարգապահության խախտումները վերացնելու գործում: Չնայած երկրամասի կուսակցական կազմակերպության մեջ քննադատության ու ինքնաքննադատության մակարդակի

անին, այդ մեթոդը դեռևս լիովին չի օգտագործվում կադրերի պատասխանատվությունը բարձրացնելու և գործը բարելավելու համար:

ՍՄԿԿ Կենտկոմը կուսակցության Կրասնոդարի երկրկոմին պարտավորեցրել է է՛լ ավելի կատարելագործել ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների կատարման կազմակերպչական ու քաղաքական աշխատանքները: Ջանքերը կենտրոնացնել համագումարի առաջ քաշված գլխավոր պրոբլեմների վրա, գտնել դրանց լուծման լավագույն ուղիները, հետևողականորեն և ստեղծագործաբար կիրառել բոլոր օղակներում արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի բարձրացման կուրսը: Լայնորեն ծավալել Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության վաթսունամյակի նախապատրաստումը և ապահովել այդ նշանավոր տոնի արժանավայել դիմավորումը:

Համագումարի որոշումների կատարման համար ՍՄԿԿ երկրկոմի, Ադիգեյական մարզկոմի, քաղկոմների ու շրջկոմների, երկրամասի բոլոր կոմունիստների գործունեության մարտական ծրագիրը պետք է դառնան ՍՄԿԿ Կենտկոմի 1976 թվականի հոկտեմբերյան պլենումում ընկեր Լ. Ի. Բրեժնևի արտասանած ճառի դրույթներն ու հետևությունները: Անհրաժեշտ է լավագույն ձևով օգտագործել արտադրական պոտենցիալը, աշխատանքային ռեսուրսները, հատկացվող կապիտալ ներդրումները: Հասնել այն բանին, որ բոլոր ձեռնարկությունները, կառույցները, կոլտնտեսություններն ու սովխոզները ոչ միայն քանակական ու որակական ցուցանիշներով կատարեն սահմանված պլանները, այլև հասնեն ավելի բարձր բնագծերի:

Երկրամասային կուսակցական կազմակերպության կարևորագույն խնդիրն է բարձրացնել Կուբանի դերը, որպես կայուն բարձրապրանքային գյուղատնտեսության գոտու, գյուղատնտեսական մթերքների արդյունաբերական վերամշակման խոշոր կենտրոնի, ապահովել երկրամասի ագրոարդյունաբերական համալիրի մեջ մտնող բոլոր ճյուղերի ու ձեռնարկությունների հստակ փոխգործողությունը:

Հաստատակամորեն, տնտեսական, գիտական խոր հիմնավորումով անցկացնել գյուղատնտեսական արտադրությունը միջտնտեսային կոոպերացման և ագրոարդյունաբերական ինտեգրացման բազայի վրա մասնագիտացնելու և համակենտրոնացնելու աշխատանքը: Այսուհետև ևս ինտենսիվորեն զարգացնել հացահատիկային տնտեսությունը, հատուկ ուշադրություն նվիրելով ուժեղ ցորենի, ինչպես նաև բրնձի, եգիպտացորենի մշակությանը: Ավելացնել տեխնիկական կուլտուրաների, պտղի ու բանջարեղենի արտադրությունը և բարելավել դրանց պահպանման ու վերամշակման գործը:

ՍՄԿԿ Կենտկոմը ուշադրություն է հրավիրել այն բանի վրա, որ անհրաժեշտ է գործուն միջոցներ ձեռնարկել անասնապահության ետ մնալը հաղթահարելու համար: Կերի կայուն բազայի ստեղծման և ցեղաբուծության կատարելագործման հիման վրա պետք է զգալիորեն բարձրացվի անասունների ու թռչունների մթերատվությունը, միաժամանակ ավելացնելով դրանց գլխաքանակը: Արագացնել առաջադիմական տեխնոլոգիաների արմատավորումը կոլտնտեսային ու սովխոզային ֆերմաներում, ապահովել մսի, կաթի, ձվի և մյուս մթերքների ինքնարժեքի էական իջեցում:

Ակտիվորեն իրականացնել շրջակա միջավայրի պահպանության միջոցառումները: Ապահովել երկրամասի հողային, ջրային և անտառային ռեսուրսների ռացիոնալ օգտագործումը: Բարձրացնել հողատարածությունների բերրիությունը, բարելավել դրանց պաշտպանությունը ջրային և հողմային էրոզիայի ազդեցությունից: Անհրաժեշտ միջոցներ ձեռնարկել Սև և Ազովի ծովերի ավազանների ջրամբարների աղտոտումը կանխելու համար:

Մշտական ուշադրություն դարձնել աշխատավորների կյանքի կուլտուրական և կենցաղային պայմանների բարելավման վրա, ուժեղացնել կուսակցության քաղկոմներին, շրջկոմներին, սովետական ու տնտեսական մարմիններին ներկայացվող պահանջկոտությունը բնակարանների, դպրոցների, մանկական ու բուժական հիմնարկների շինարարության պլանների կատարման, առևտրի, հասարակական սննդի, կենցաղային սպասարկման ձեռնարկությունների



ցանցի զարգացման և նրանց աշխատանքի կուլտուրայի բարձրացման համար:

Երկրամասի կուսակցական, սովետական, արհմիութենական ու տնտեսական կազմակերպությունները, տնտեսական ղեկավարները պետք է միջոցներ ձեռնարկեն է՛լ ավելի զարգացնելու մասսաների ստեղծագործական նախաձեռնությունը, բարելավելու սոցիալիստական մրցության կազմակերպումը՝ «Արտադրության արդյունավետությունը և աշխատանքի որակը բարձրացնելու, տասներորդ հնգամյակի առաջադրանքները հաջողությամբ կատարելու համար համամիութենական սոցիալիստական մրցության մասին» ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի ու ՀամԼԿԵՄ Կենտկոմի որոշման մեջ շարադրված խնդիրներին համապատասխան: Ապահովել, որ բոլոր աշխատանքային կոլեկտիվները, բանվորներն ու կոլտնտեսականները լավ իմանան իրենց պլանային առաջադրանքները՝ ըստ տարիների և ըստ ամբողջ հնգամյակի, պարզորոշ պատկերացնեն իրենց դերն ու տեղը աշխատանքային պրոցեսում: Հատուկ ուշադրություն դարձնել հանդիպական պլանների, կոլեկտիվ և անհատական պարտավորությունների հաջող կատարման համար անհրաժեշտ պայմանների ստեղծմանը:

Երկրամասի կուսակցական կոմիտեները կոչված են հասնելու այն բանին, որ յուրաքանչյուր կուսակցական կազմակերպություն խրախուսի և տարածի իրոք գործնական և օգտակար նախաձեռնությունները, վճռականորեն վերացնի այն ամենը, ինչը խանգարում է նորարարությանը, առաջընթացին: Անհրաժեշտ է համակողմանիորեն ամրապնդել ու զարգացնել գիտության ստեղծագործական կապերը արտադրության հետ, ավելի լայնորեն արմատավորել լավագույն նվաճումները, բոլոր տնտեսությունների սեփականությունը դարձնել հողագործության բարձր կուլտուրայի կոլեկտիվների, անասնապահության առաջավորների փորձը, ակտիվացնել արտադրության արդյունավետության բարձրացման՝ երկրամասի ձեռնարկություններում սկսված կոմպլեքսային համակարգի մշակումը, ավելի լավ օգտագործել շինարարության կազմակերպման առաջադիմական մեթոդները:

ՍՄԿԿ Կենտկոմը կուսակցական կոմիտեներին և սկզբնական կուսկազմակերպություններին պարտավորեցրել է՝ բոլոր աշխատավորների, հատկապես երիտասարդների մեջ նպատակասլաց կերպով ձևավորել կոմունիստական գաղափարայնություն, ակտիվ կենսադիրքորոշում, ավելի լավ հաշվի առնել բնակչության տարբեր խմբերի առանձնահատկությունը:

Քաղաքական լուսավորությունը և մարդկանց ուսուցումը հետևողականորեն զուգորդել հանրօգուտ աշխատանքի, հասարակության գործերի կառավարման մեջ նրանց ներգրավելու հետ: Բարձրացնել սոցիալիստական մրցության նշանակությունը՝ որպես մարդկանց քաղաքական, աշխատանքային և բարոյական դաստիարակության դպրոցի: Գաղափարաքաղաքական ներգործության բոլոր միջոցները, հասարակայնության ազդեցությունը, օրենքի ուժը լայնորեն օգտագործել աշխատանքային կարգապահության խախտումների և մյուս հակաբարոյական դրսևորումների դեմ մղվող պայքարում:

ՍՄԿԿ երկրկոմը պետք է հաստատակամորեն կատարելագործի կուսակցության մարզային, քաղաքային ու շրջանային կոմիտեների ղեկավարումը, համակողմանիորեն վերլուծի նրանց աշխատանքը, կանոնավոր կերպով քննարկի հաշվետվությունները՝ ոչ միայն առանձին հարցերի վերաբերյալ, այլև նրանց ամբողջ գործունեության վերաբերյալ: Կարևոր է, որ կուսակցական կոմիտեները միշտ գործեն իրենց ներհատուկ քաղաքական մեթոդներով, հոգալով սկզբնական կուսակցական կազմակերպությունների մարտունակության մասին, զարգացնեն սովետական, արհմիութենական, կոմերիտական ու տնտեսական մարմինների նախաձեռնությունը և բարձրացնեն նրանց դերը, չփոխարինեն նրանց, թույլ չտան վարչարարություն:

Ամրապնդել կոլեկտիվիզմը կուսակցական մարմինների աշխատանքում: Կուսակցական ղեկավարման այս բարձրագույն սկզբունքի խստիվ կիրառումը պետք է ապահովի որակյալ որոշումների մշակումը և դրանց հաջող իրագործումը, հուսալի երաշխիք ծառայի ընդդեմ սուբյեկտիվիզմի: Պլենումներում,

բյուրոների նիստերում, կուսակցական ժողովներում անհրաժեշտ է այնպիսի մթնոլորտ ստեղծել, որ տրամադրի հարցերի խոր ու սկզբունքային քննարկման, կարծիքների անկաշկանդ արտահայտման, թերությունների բացահայտման: Կուսակցական ընտրովի ակտիվին ավելի շատ օգնել՝ ուսումնասիրելու քննարկման դրվող պրոբլեմները, ձեռք բերելու կազմակերպչական ու քաղաքական աշխատանքի հմտություններ:

ՍՄԿԿ երկրկոմը կոչված է մշտապես բարելավելու կուսակցության ու կառավարության դիրեկտիվների, սեփական որոշումների կատարման ստուգումն ու կազմակերպումը: Պետք է ուժեղացնել վերահսկողության ազդեցությունը գործերի ընթացքի վրա, հնարավոր սխալների և թերացումների կանխման վրա:

Ավելի խորն ուսումնասիրել տեղերում տիրող փաստական վիճակը: Ապահովել, որ յուրաքանչյուր ղեկավար անձամբ զբաղվի կատարման ստուգմամբ, որպես կարևորագույն պաշտոնական պարտականություն: Պետք է հիշել, որ վերահսկողության ժամանակ կարևոր են թե՛ թերությունների սկզբունքային քննադատությունը և թե՛ դրական փոփոխությունների ընկերական պաշտպանությունը: Է՛լ ավելի գործուն ու կանոնավոր պետք է դառնա կուսակցության երկրկոմի քարտուղարության կողմից իրականացվող վերահսկողությունը:

ՍՄԿԿ Կենտկոմը այն կարծիքին է, որ երկրամասային կուսակցական կազմակերպությունը պետք է այսուհետև ևս բարձրացնի կադրերի հետ կատարվող աշխատանքի մակարդակը: Ժամանակակից պայմաններում ղեկավարը պետք է իր մեջ կուսակցականությունը օրգանապես միացնի խոր գործիմացության, կարգապահությունը՝ խնդիրների լուծման նկատմամբ ստեղծագործական մոտեցման, պահանջկոտությունը՝ մարդկանց հանդեպ զգայուն վերաբերմունքի հետ:

ՍՄԿԿ երկրկոմը, մարզկոմը, քաղկոմներն ու շրջկոմները, սկզբնական կուսակցական կազմակերպությունները կոչված են հասնել այն բանին, որ բոլոր ղեկավար կադրերը օժտված լինեն այդ բարձր հատկություններով, տիրապետեն աշխատանքի լենինյան ոճին, կառավարման գիտությանը, սովորեն, ինչպես նշել է Վ. Ի. Լենինը, «պայքարի այնպիսի միջոցների, եղանակների ու մեթոդների գիտակցական ընտրությունը, որոնք ընդունակ են ուժերի նվազագույն ծախսումով տալ ամենամեծ և առավել հաստատուն արդյունքներ»: Անհրաժեշտ է աշխատողների մեջ դաստիարակել անհաշտություն թերությունների հանդեպ, իրենց գործունեությունը քննադատաբար գնահատելու հմտություն ու պատրաստակամություն, նրանց զերծ պահել մեծամտանալուց և ինքնահանգստացումից:

Կուսակցության երկրկոմը, մարզկոմը, քաղկոմները, շրջկոմները պարտավոր են ապահովել կուսակցական ապարատի կազմակերպող դերի ուժեղացումը, բաժինների հստակ ու ներդաշնակ աշխատանքը: Նրանց հիմնական ջանքերը կենտրոնացնել կուսակցական կազմակերպությունների կյանքի ու գործունեության ուսումնասիրման, նրանց գործնական օգնություն ցույց տալու վրա, կատարման ստուգման վրա: Կուսակցական աշխատողները պետք է հանգամանորեն մինչև վերջ մշակեն այն հարցերը, որոնց վերաբերյալ որոշումներ են պատրաստվում, ուշի-ուշով վերլուծեն և ընդհանրացնեն փաստերը, աշխատավորների նամակները, ցուցաբերեն բարձր սկզբունքայնություն և պատասխանատվություն:

ՍՄԿԿ Կենտկոմը հաստատ վստահություն է հայտնել, որ Կրասնոդարի երկրամասային կուսակցական կազմակերպությունը աշխատավորներին կմոբիլիզացնի կուսակցության XXV համագումարի որոշումների կենսագործմանը, արժանավայել կդիմավորի Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 60-ամյակը և հաջողությամբ կկատարի տասներորդ հնգամյակի առաջադրանքները:

# ՍՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵՈՒՄ

**ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն որոշում է ընդունել «ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների կատարման գործում քաղաքական բանավոր ագիտացիայի դերը բարձրացնելու մասին»:**

Որոշման մեջ նշվում է, որ կուսակցական կազմակերպությունները աշխատավորների կոմունիստական դաստիարակության, նրանց ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների կատարման համար մոբիլիզացնելու ասպարեզում իրենց գործունեության մեջ, մամուլի, հեռուստատեսության, ռադիոյի, քաղաքական ու տնտեսագիտական կրթության սիստեմի, դասախոսական պրոպագանդայի հետ մեկտեղ, լայնորեն կիրառում են բանավոր ագիտացիայի տարբեր ձևերը:

Կուսակցության խոսքը մասսաներին է հասցնում ագիտատորների, քաղինֆորմատորների, արտադրության առաջավորների, ժողովրդական տնտեսության մասնագետների, ղեկավար կադրերի թվին պատկանող զեկուցողների մի մեծ ջոկատ:

Նրանք աշխատավորներին օգնում են՝ խորապես յուրացնելու ՍՄԿԿ XXV համագումարում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևի զեկուցման, Կենտկոմի 1976 թվականի հոկտեմբերյան պլենումում նրա ճառի դրույթներն ու հետևությունները, ավելի լրիվ ըմբռնելու տասներորդ հնգամյակում աշխատանքային կոլեկտիվների խնդիրները, դրանց լուծման գործում յուրաքանչյուր մարդու անձնական ավանդը:

Կուսակցական կազմակերպությունները, հենվելով քաղաքական բանավոր ագիտացիայի՝ կուսակցության մշակած ավանդույթների վրա, գտնում են նրա նոր, առավել արդյունավետ ձևեր ու մեթոդներ: Լայն տարածում են ստացել հարց ու պատասխանի երեկույթները, երկրամասերի, մարզերի, քաղաքների, շրջանների ղեկավար աշխատողների ամենամսյա միաժամանակյա ելույթները բնակչության առջև (միասնական քաղօրեր), ինֆորմացիոն-պրոպագանդիստական խմբերի և ագիտբրիգադների մեկնումները տեղերը, քաղաքացիների միտինգները, ժողովներն ու հավաքույթները, բանավոր հանդեսները, աշխատանքային փառքի, բերքի տոները, մրցության հաղթողների մեծարումները, բանվորի և կոլտնտեսականի կոչում տալը, կուսակցության վետերանների, պատերազմի և աշխատանքի վետերանների հետ հանդիպումները և մյուս մասսայական միջոցառումները:

Կուսակցության երկրկոմներին, մարզկոմներին, քաղկոմներին ու շրջկոմներին առընթեր հաջողությամբ գործում են զեկուցողների խմբեր, որոնց շատ դեպքերում գլխավորում են կուսակցական կոմիտեների առաջին քարտուղարները: Հասարակական-քաղաքական կյանքի հրատապ հարցերի պարզաբանման գործում իրենց դրականապես են դրսևորել քաղինֆորմատորների խմբերը: Երիտասարդության պրոֆեսիոնալ պատրաստության, նրա քաղաքական և բարոյական դաստիարակության գործուն ձև է դարձել վարպետ-դաստիարակների շարժումը:

Դրա հետ մեկտեղ ՍՄԿԿ Կենտկոմը նշել է, որ կուսակցական կոմիտեները բանավոր ագիտացիայի հնարավորությունները դեռևս լրիվ չեն օգտագործում կուսակցության ներքին և արտաքին քաղաքականությունը, ՍՄԿԿ XXV համագումարի որոշումներից բխող՝ աշխատանքային կոլեկտիվների խնդիրները

պարզաբանելու համար, մասսաների ստեղծագործական նախաձեռնությունն ու եռանդը է՛լ ավելի զարգացնելու, սոցիալիստական մրցությունը ծավալելու համար:

Ագիտմասսայական աշխատանքի բովանդակության և կազմակերպման մեջ միշտ չէ, որ բավարար չափով են հաշվի առնվում մարդկանց կրթության և կուլտուրայի մակարդակը, մամուլի, հեռուստատեսության, ռադիոյի միջոցով նրանց լավատեղյակությունը: Զրույցները, քաղաքական ինֆորմացիաները, զեկուցումները հաճախ սահմանափակվում են հանրահայտ ճշմարտությունների վերապատումով, պատասխան չեն տալիս աշխատավորներին հետաքրքրող հարցերին, շրջանցում են տեղական կյանքի, բարոյական դաստիարակության հրատապ պրոբլեմները, ուշադրությունը չեն բևեռում եղած թերությունների վերացման վրա: Հանդիպում են փաստեր, երբ կուսակցական կազմակերպությունները, ընկնելով ագիտատորների և քաղինֆորմատորների քանակի ետևից, այդ աշխատանքը հանձնարարում են թույլ պատրաստված ընկերների, կանոնավոր կերպով չեն հրահանգավորում իրենց ագիտացիոն ակտիվին, նրանց չեն ապահովում անհրաժեշտ ուղեցույցերով, տեղեկատու նյութերով, մեթոդական հանձնարարականներով, նրանց առջև չեն դնում տվյալ կոլեկտիվի, քաղաքի, շրջանի համար կոնկրետ, հրատապ խնդիրներ: Առանձին ձեռնարկություններում ագիտկոլեկտիվներ առհասարակ չկան:

Կուսակցական շատ կոմիտեներ չեն ապահովում զեկուցողների խմբերի պլանաչափ աշխատանքը, պատշաճ պահանջկոտություն չեն ցուցաբերում այն կոմունիստների, ժողովրդական տնտեսության մասնագետների, ղեկավարների նկատմամբ, ովքեր հեռու են քաշվել դաստիարակչական աշխատանքին մասնակցելուց: Ագիտմասսայական աշխատանքը ոչ կանոնավոր, գերազանցապես ընտրական կամպանիաների ժամանակաշրջանում է կատարվում ըստ բնակության վայրի: Բանավոր ագիտացիայի միջոցները վատ են օգտագործվում հասարակական կարծիքի, մարդկանց տրամադրությունների և պահանջմունքների ուսումնասիրման, նրանց մեջ առաջացող հարցերին օպերատիվ կերպով արձագանքելու համար:

Այդ թերությունները որոշակի չափով հետևանք են այն բանի, որ որոշ կուսակցական կազմակերպություններում թուլացել է ուշադրությունը բանավոր ագիտացիայի նկատմամբ, նրանք արտահայտում են այն սխալ կարծիքը, թե, իբր, մասսայական ինֆորմացիայի և պրոպագանդայի միջոցների ճյուղավորված սիստեմի առկայության պայմաններում, բանավոր ագիտացիայի նշանակությունը նվազում է: Անհրաժեշտ է ըստ ամենայնի կատարելագործել բանավոր ագիտացիան՝ ի շահ մասսաների մեջ կուսկազմակերպությունների քաղաքական աշխատանքի ներգործության հետագա ուժեղացման:

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմներին, կուսակցության երկրկոմներին, մարզկոմներին, քաղկոմներին ու շրջկոմներին, սկզբնական կուսակցական կազմակերպություններին պարտավորեցրել է միջոցներ ձեռնարկել՝ բարձրացնելու բանավոր ագիտացիայի դերը սովետական մարդկանց գաղափարաքաղաքական, աշխատանքային և բարոյական դաստիարակության գործում, սովետական մարդկանց մոբիլիզացնելու ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների, համագումարում տված ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ և ՍՄԿԿ Կենտկոմի 1976 թվականի հոկտեմբերյան պլենումում արտասանած ճառում ընկեր Լ. Ի. Բրեժնևի կողմից առաջ քաշված խնդիրների հաջող իրականացման, Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 60-ամյակի արժանավայել դիմավորման համար:

Որոշման մեջ ընդգծվում է, որ բանավոր ագիտացիան եղել է և մնում է կուսակցական գործունեության կարևոր ոլորտը, մասսաների հետ կուսակցության մշտական կապի, կուսակցության, նրա լենինյան Կենտրոնական կոմիտեի շուրջը նրանց համախմբման ակտիվ ձևերից մեկը, քաղաքական ղեկավարման արդյունավետ գործիք:

Հիմնված լինելով մարդկանց հետ կենդանի շփման վրա, նա հնարավորություն է տալիս կոնկրետ, վառ, մարդկանց մոտիկ ու հասկանալի փաստերով և օրինակներով ցույց տալ կոմունիստական շինարարության հաջողությունները, պարզաբանել կուսակցության քաղաքականությունը, կուսակցական և պետական մարմինների որոշումները, առարկայորեն ներազդել մրցության զարգացման, աշխատավորների արտադրական ու հասարակական ակտիվության բարձրացման վրա, ուսումնասիրել մասսաների տրամադրությունները և ժամանակին արձագանքել դրանց, լսարանի հետ սրտաբաց զրույց անցկացնել թերությունների, դժվարությունների և դրանց հաղթահարման ուղիների մասին, կուսակցական խոսքը հասցնել յուրաքանչյուր մարդու: Քաղաքական ագիտացիայի հետագա զարգացումը, կատարելագործումը թելադրվում է կոմունիստական դաստիարակության ամբողջ գործի դրվածքի նկատմամբ կոմպլեքսային մոտեցման՝ ՍՄԿԿ XXV համագումարի առաջ քաշած խնդրով:

Քաղաքական ագիտացիան պետք է դիտվի որպես աշխատավորների մարքս-լենինյան աշխարհայացքի, կոմունիստական համոզվածության, սոցիալիստական հայրենասիրության և ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակելու կարևոր միջոցներից մեկը: Անհրաժեշտ է հասնել այն բանին, որ ագիտացիոն-մասսայական միջոցառումները ապահովեն տեղի ունեցող իրադարձությունների և աշխատավորների մեջ ծագող հարցերի ժամանակին, որակյալ պարզաբանումը, ինչպես հարկն է շահագրգռեն մարդկանց, արթնացնեն նրանց ստեղծագործական եռանդը, նպատակամղեն աշխատանքի արտադրողականության, արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի բարձրացմանը: Ագիտատոր ակտիվիստները կոչված են կուսակցական խոսքով, աշխատանքային և բարոյական օրինակով մարդկանց մեջ դաստիարակելու կոմունիստական վերաբերմունք աշխատանքի և հանրային սեփականության նկատմամբ, պատասխանատվության զգացում՝ հանձնարարված գործի համար: Դրա հետ մեկտեղ նրանք պետք է անհանդուրժողական վերաբերմունքի իրադրություն ստեղծեն անկարգապահության, հարբեցողության, խուլիգանության, ժողովրդական բարիքի հափշտակման, գռփողականության, ընչաքաղցության, զազրախոսության և այլ բացասական երևույթների նկատմամբ, փաստարկված ձևով մերկացնեն բուրժուական պրոպագանդայի զրպարտչական հերյուրանքները:

Միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմներին, կուսակցության երկրկոմներին, մարզկոմներին, քաղկոմներին, շրջկոմներին առաջարկված է՝ կատարելագործել քաղաքական բանավոր ագիտացիայի հիմնական օղակները:

Անհրաժեշտ է համարվել լրջորեն բարելավել սկզբնական և արտադրամասային կուսկազմակերպություններին առընթեր ստեղծվող ագիտկոլեկտիվների գործունեությունը, ապահովել դրանց աշխատանքի բարձր որակը, չընկնել քանակական ցուցանիշների ետևից: Ագիտատորներ պետք է հաստատվեն ամենից առաջ կոմունիստները, ինչպես նաև առավել հեղինակավոր անկուսակցական ակտիվիստները: Հարկավոր է ագիտկոլեկտիվների մեջ ավելի լայնորեն ներգրավել վարպետներին, բրիգադավարներին և միջին օղակի մյուս այն ղեկավարներին, որոնց կարելի է վստահել այդ կարևոր կուսակցական հանձնարարությունը:

Հարկավոր է քաղինֆորմատորների կազմը ամրապնդել փորձված, տեսականորեն պատրաստված ակտիվիստների հաշվին, որոնք ընդունակ լինեն որակյալ ձևով մեկնաբանել երկրի քաղաքական, տնտեսական, կուլտուրական կյանքի և միջազգային դրության հարցերը, պարզաբանել կոմունիստական բարոյականության, սովետական ապրելակերպի սկզբունքներն ու նորմերը: Հավանություն է տրվել կուսկոմներին, ինչպես նաև այն սկզբնական կուսկազմակերպությունների բյուրոներին առընթեր քաղինֆորմատորների խմբեր ստեղծելու պրակտիկային, որտեղ դրա համար համապատասխան կադրեր կան:

Կարևոր է ըստ ամենայնի զարգացնել աշխատավորների քաղաքական դաստիարակության գործին ղեկավար կադրերի մշտական ու պարտադիր մասնակցության լենինյան ավանդույթը, այդ նպատակներով օգտագործելով

աշխատանքի բազմազան ձևեր։ Պետք է ակտիվացվի կուսակցության շրջկոմների, քաղկոմների, մարզկոմների, երկրկոմների, միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմների զեկուցողների խմբերի գործունեությունը։ Անհրաժեշտ է ապահովել ղեկավարների կանոնավոր ելույթները բնակչության առջև՝ իրենց կողմից գլխավորվող մինիստրությունների, գերատեսչությունների, ձեռնարկությունների, կազմակերպությունների, հիմնարկների աշխատանքի մասին։

Հարկավոր է ավելի լրիվ օգտագործել մարդկանց հետ անձնական կոնտակտների հնարավորությունները հասարակական կարծիքը ուսումնասիրելու և ձևավորելու համար, սիստեմատիկաբար ընդհանրացնել և վերլուծել ագիտատորներին, քաղինֆորմատորներին, զեկուցողներին հասցեագրվող հարցերը, առաջարկություններն ու քննադատական դիտողությունները, օպերատիվ կերպով արձագանքել դրանց, աշխատավորներին տեղեկացնել դրանց առթիվ ձեռնարկված գործնական միջոցների մասին։

Կուսակցական կոմիտեներին հանձնարարված է՝ բանավոր ագիտացիայի կազմակերպման ու բովանդակության մեջ հաշվի առնել ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերում, երկրի տարբեր շրջաններում մարդկանց աշխատանքային գործունեության յուրահատկությունը։ Հատուկ ուշադրություն է հրավիրվում հեռուստատեսության ոլորտի մեջ չընդգրկված հեռավոր վայրերում, նոր ստեղծվող կոլեկտիվներում, կանանց աշխատանքի գերակշռություն ունեցող ճյուղերում, սպասարկման ոլորտում, դաշտակայաններում և անասնապահական ֆերմաներում, սակավամարդ կազմ ունեցող կոլեկտիվներում ագիտմասսայական աշխատանքի դրվածքի վրա, մարդկանց հետ, առաջին հերթին երիտասարդության հետ, անհատական աշխատանք կատարելու վրա։

Մատնանշվել է, որ անհրաժեշտ է պլանաչափ և սիստեմատիկ մասսայական-քաղաքական աշխատանք կատարել ըստ բնակության վայրի, ամենից առաջ բնակչության այն խավերի մեջ, որոնք կապված չեն աշխատանքային կոլեկտիվների հետ, և հանրակացարաններում ապրող երիտասարդության շրջանում։

Այդ նպատակներով պետք է ավելի լավ օգտագործվեն կուլտուրայի տները, ակումբները, գրադարանները, կինոթատրոնները, դպրոցները, կարմիր անկյունները, հիմնարկների հանդիսադահլիճները, հարկավոր է ընդլայնել ամառային ագիտհրապարակների ցանցը։ Ագիտացիոն աշխատանքը պետք է ակտիվորեն զուգակցել կուլտուր-մասսայական միջոցառումների անցկացման հետ։ Միկրոշրջանների հասարակական խորհուրդներին առընթեր նպատակահարմար է ստեղծել աշխատավորների մեջ ծագող հարցերի պարզաբանման կոնսուլտանտ-ակտիվիստների խմբեր, այդ աշխատանքում լայնորեն ներգրավել մանկավարժներին, իրավաբաններին, բժիշկներին, կուլտուրայի աշխատողներին և մյուս մասնագետներին։

Միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմներին, կուսակցության երկրկոմներին, մարզկոմներին, քաղկոմներին և շրջկոմներին առաջարկված է միջոցներ ձեռնարկել՝ բարելավելու ագիտատորների, քաղինֆորմատորների և զեկուցողների օպերատիվ հրահանգավորումը, նրանց տեսական և մեթոդական պատրաստությունը։

Կուսակցական կոմիտեները պարտավոր են կանոնավոր կերպով մշակել զրույցների, քաղինֆորմացիաների, զեկուցումների օրինակելի թեմատիկա, այն կոորդինացնելով մամուլի, հեռուստատեսության, ռադիոյի ելույթների, դասախոսական պրոպագանդայի հետ, քաղաքական ագիտացիայի ակտիվիստներին օգնելու համար կուսակցական կազմակերպություններին ուղարկել ուղեցույցեր և այլ նյութեր՝ հրատապ հարցերի վերաբերյալ։

Կուսկոմները և կուսակցական բյուրոները պետք է ապահովեն ագիտատորների և քաղինֆորմատորների կոնկրետ, գործնական հրահանգավորումը, այդ գործում ներգրավեն որակյալ դասախոսներին, կուսակցական, սովետական, տնտեսական մարմինների ղեկավարներին։ Պաշտպանության է արժանացել ձեռնարկություններում և կառույցներում, կոլտնտեսություններում և



սովխոզներում, կազմակերպություններում և հիմնարկներում տեղեկատու-ինֆորմացիոն կենտրոններ ստեղծելու՝ կուսակցական կազմակերպությունների նախաձեռնությունը։

Ուշադրություն է հրավիրվել այն բանի վրա, որ ագիտատորներին, քաղինֆորմատորներին, զեկուցողներին չծանրաբեռնեն այլ հասարակական հանձնարարություններով, նրանց խրախուսեն ակտիվ աշխատանքի համար։

Ագիտատորների և քաղինֆորմատորների պատրաստման համար ավելի լայնորեն կօգտագործվի մարքս-լենինյան կրթության սիստեմը։ Քաղինֆորմատորների դպրոցներն ու սեմինարները կդառնան կուսակցական ուսուցման բաղկացուցիչ մասը։ Նախատեսվում է մարքսիզմ-լենինիզմի հիմունքների դպրոցներում, որոնցում պարապում են ագիտատորները, ուսումնասիրել տեսության և ագիտացիոն-մասսայական աշխատանքի մեթոդիկայի հարցերը։ Կուսակցության քաղկոմներին, շրջկոմներին և խոշոր կուսկոմներին առընթեր պետք է կազմակերպվեն ագիտկոլեկտիվների ղեկավարների մշտապես գործող սեմինարներ։ Այդ օղակների համար կմշակվեն հատուկ հանձնարարականներ, ծրագրեր և ուսումնական պլաններ։ Առաջարկված է նաև բարձրագույն կուսակցական դպրոցների, մարքսիզմ-լենինիզմի համալսարանների, կուսակցական ակտիվի դպրոցների կուսակցական շինարարության դասընթացի ուսումնական պլաններում ընդլայնել քաղաքական ագիտացիայի պրոբլեմների ուսումնասիրությունը։

Քաղաքական լուսավորության տների ու կաբինետների վրա են դրված ագիտատորներին ու քաղինֆորմատորներին ցույց տրվող մեթոդական օգնության կազմակերպումը, նրանց համար տեղեկատու-ինֆորմացիոն նյութերի, ագիտացիոն աշխատանքում տեխնիկական միջոցների և դիտողական պարագաների օգտագործման վերաբերյալ հանձնարարականների պատրաստումը, փորձի ընդհանրացումը։ Անհրաժեշտ է տներին ու կաբինետներին առընթեր ստեղծել ագիտմասսայական աշխատանքի հարցերի մեթոդական խորհուրդներ։

Սահմանված են «Ագիտատոր» հանդեսի, քաղաքական ագիտացիայի հարցերը լուսաբանող հանրապետական հանդեսների, երկրամասային, մարզային «Ագիտատորների բլոկնոտ»-ների խնդիրները՝ ագիտատորներին, քաղինֆորմատորներին, զեկուցողներին սիստեմատիկ որակյալ օգնություն ապահովելու ասպարեզում, հաշվի առնելով նրանց յուրահատկությունն ու ֆունկցիաները։

Այդ հրատարակությունները պետք է կանոնավոր կերպով հրապարակեն բանավոր ելույթների օրինակելի թեմատիկան, կուսակցության ներքին և արտաքին քաղաքականության, տնտեսական և կուլտուրական շինարարության՝ ՍՄԿԿ XXV համագումարի որոշումներից բխող հրատապ հարցերի վերաբերյալ զրույցների մեթոդական մշակումները, այլ հրահանգչական և ինֆորմացիոն նյութեր, դրանք հագեցնելով փաստարկումներով, հետաքրքրական փաստերով, թվերով, օրինակներով, համադրություններով, ինչպես նաև ավելի լրիվ բացահայտել ագիտացիոն-մասսայական աշխատանքի դրական փորձը։

Կենտրոնական և տեղական թերթերի խմբագրությունները պետք է ավելի լայնորեն լուսաբանեն ագիտացիոն-մասսայական աշխատանքի հարցերը, բանավոր ագիտացիայի կուսակցական ղեկավարման պրակտիկան։ Քաղհրատին հանձնարարված է ապահովել քաղաքական բանավոր ագիտացիայի ուսումնական ձեռնարկի, ագիտատորի գրադարանի, այնպիսի գրքերի և գրքույկների լույս ընծայումը, որոնք ընդհանրացնեն ագիտմասսայական աշխատանքի փորձը, բացահայտեն նրա մեթոդիկան։ ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր հասարակական գիտությունների ակադեմիային առաջարկված է գիտական հետազոտությունների պլաններում նախատեսել արդի պայմաններում քաղաքական ագիտացիայի տեսական ու մեթոդական պրոբլեմների մշակումը։

# ՀՆԳԱՄՅԱԿԻ ԲՆԱԳԾԵՐԸ ՆՎԱՃԵԼՈՒ ՎՃՌԱԿԱՆՈՒԹՅԱՄԲ

ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՈՒՐԴԸ, հայրենասիրական խանդավառությամբ տոգորված, թևակոխել է տասներորդ հնգամյակի երկրորդ տարին և պատրաստվում է կոմունիստական շինարարության նոր սխրանքներով դիմավորելու Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 60-րդ տարեդարձը։ Կոմունիստական կուսակցության փորձված ղեկավարությամբ, սովետների երկրի աշխատավորները՝ եռանդով ու լավատեսությամբ լի, հաջողությամբ կենսագործում են ՍՄԿԿ XXV համագումարի պատմական որոշումները։

ՍՄԿԿ XXV համագումարից հետո մեր կուսակցության և ժողովրդի կյանքում առանձնահատուկ տեղ գրավեց ՍՄԿԿ Կենտկոմի հոկտեմբերյան (1976 թ.) պլենումը։ Նրա որոշումներում հետագա զարգացում ու կոնկրետացում ստացան XXV համագումարի ստրատեգիական ու տակտիկական դրույթները, ձևակերպվեցին կուսակցության ներքին ու արտաքին քաղաքականության կարևորագույն խնդիրները։ Առաջնորդվելով կուսակցության իմաստուն կանխագծումներով, մեր արդյունաբերության, գյուղատնտեսության, շինարարության, տրանսպորտի և ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի աշխատողները հնգամյակի առաջին իսկ օրերից սոցիալիստական լայն մրցություն ծավալեցին ստանձնած պարտավորությունների և տասներորդ հնգամյակի առաջադրանքների կատարման համար։ Նրանց համառ ու քրտնաջան աշխատանքն իր դրական արդյունքը տվեց։ Սովետական ժողովուրդը ոգևորիչ արդյունքներով ավարտեց հնգամյակի առաջին տարին։ Այն, որ նշանավորվեց երկրի էկոնոմիկայի բոլոր ճյուղերի զարգացման հետագա հաջողություններով, բազմաթիվ հայրենասիրական նախաձեռնություններով, սոցիալիստական մրցության հսկայական թափով, իրավամբ, կարելի է անվանել սովետական մարդկանց անձնվեր և ոգեշունչ աշխատանքի տարի, արդյունավետության ու որակի բարձրացման համար նրանց հաստատակամ պայքարի, մեր հայրենիքի հզորության ամրապնդման ու բարգավաճման տարի։

Արդյունաբերության արտադրանքն աճեց 4,8 տոկոսով, պլանով նախատեսված 4,3-ի փոխարեն։ Հավաքվեց հացահատիկի՝ երկրի պատմության մեջ ամենաբարձր բերքը՝ 224 մլն տոննա։ Մեր հայրենիքն ավելի հարստացավ, բարձրացավ աշխատավորների բարեկեցությունը. նրանց ռեալ եկամուտներն աճեցին 3,7 տոկոսով, 5 տոկոսով ավելացան սպառման հասարակական ֆոնդերը, 10 մլն մարդ ստացավ նոր բնակարան։ Միլիոնների խանդավառությունն ապահովեց հանրային արտադրության հետագա դինամիկ զարգացումը, մեկ անգամ ևս ապացուցելով, որ կուսակցության բոլոր կանխագծումները հաջողությամբ կիրագործվեն։

Հոկտեմբերի վառ դրոշի ներքո ընթացող սովետական ժողովուրդը մի անգամ ևս համոզիչ կերպով ցուցադրեց մարքսիզմ-լենինիզմի հաղթական գաղափարների անպարտելիությունը, սոցիալիստական հասարակարգի առավել ամրապնդվող ստեղծագործական ուժերի անսպառությունը, սովետական ապրելակերպի հսկայական առավելությունները։

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն, ՍՍՀՄ Մինիստրների սովետը, Արհեստակցական միությունների համամիութենական կենտրոնական խորհուրդը և



ՀամԼԿԵՄ Կենտրոնական կոմիտեն, վերջերս քննության առնելով արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի բարձրացման, 1976 թվականի ժողովրդա-տնտեսական պլանի հաջող կատարման համար համամիութենական սոցիալիստական մրցության արդյունքները, ընդունեցին համապատասխան որոշում։

Ուրախալի է, որ այդ որոշմամբ հաղթող ճանաչվածների և ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշներով պարգևատրվածների թվում են նաև Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետությունը, Երևան ու Կիրովական քաղաքները, Ախուրյանի, Նաիրիի և Հրազդանի շրջանները, «Հայէլեկտրալույս» և «Մասիս» արտադրական միավորումները, Քաջարանի Լենինի շքանշանակիր պղնձամոլիբդենային և Լենինականի մսի-պահածոների կոմբինատները, Հրազդանի պետական շրջանային էլեկտրակայանը, «Երարդշին» տրեստը, Կրասնոսելսկի շրջանի Բաշքենդ ու Նոյեմբերյանի շրջանի Ճավարշավան գյուղերի սովխոզները, Աբովյանի շրջանի Կոտայք գյուղի Վ. Կույբիշևի անվան ու Հոկտեմբերյանի շրջանի Գետաշեն գյուղի «Լենուղի» կոլտնտեսությունները և հանրապետության ևս 11 առաջավոր արտադրական ձեռնարկություններ ու միավորումներ, շինարարական և տրանսպորտային կազմակերպություններ։

Բերկրալի լուրը ցնծությամբ ընդունեցին մեր հանրապետության բոլոր աշխատավորները։ Ամենուրեք, քաղաքներում ու շրջաններում տեղի ունեցան բազմամարդ միտինգներ, որոնց մասնակիցները, մեծագույն շնորհակալություն հայտնելով կուսակցությանն ու կառավարությանը՝ կատարված աշխատանքը բարձր գնահատելու համար, ստանձնեցին նոր, ավելի բարձր պարտավորություններ հնգամյակի երկրորդ տարին նույնպես լավագույն ցուցանիշներով փակելու , մեծ Հոկտեմբերի 60-րդ տարեդարձը հայրենանվեր գործերով նշանավորելու համար։

Հիրավի, հերոսական ջանքեր թափեցին հանրապետության աշխատավորները տասներորդ հնգամյակի անդրանիկ տարում։ Այդ մասին վերստին հանգամանորեն խոսվեց նաև հանրապետության կուսակցական, սովետական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունների ակտիվի՝ աշխատավորական կոլեկտիվների ներկայացուցիչների հետ համատեղ ժողովում, որը տեղի ունեցավ փետրվարի 8-ին, Երևանում։ Ժողովում «1976 թ. ժողովրդատնտեսական պլանի ու սոցիալիստական պարտավորությունների կատարման արդյունքները և հանրապետության կուսակցական, սովետական, արհմիութենական ու կոմերիտական կազմակերպությունների խնդիրները «Արտադրության արդյունավետությունը և աշխատանքի որակը բարձրացնելու, տասներորդ հնգամյակի առաջադրանքները հաջողությամբ կատարելու համար համամիութենական սոցիալիստական մրցության մասին» ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի որոշման կապակցությամբ սոցիալիստական մրցություն ծավալելու ուղղությամբ» զեկուցումով հանդես եկավ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի երկրորդ քարտուղար ընկ. Պ. Պ. Անիսիմովը։

Հանրագումարի բերելով հանրապետության արդյունաբերության աշխատողների անցած տարում կատարած արգասալի աշխատանքը, ակտիվի ժողովը գոհունակությամբ նշեց, որ պարտավորություններով նախատեսված ժամկետից երկու օր շուտ, դեկտեմբերի 24-ին կատարվեց արդյունաբերական արտադրանքի իրացման և կարևոր արտադրատեսակների թողարկման պետական պլանը։ 1975 թ. համեմատությամբ, արտադրության ծավալի աճը, պլանով նախատեսված 7,3-ի դիմաց, կազմեց 8,6 տոկոս, աշխատանքի արտադրողականությունը բարձրացավ 5,1 տոկոսով, պլանից ավելի իրացվեց 111 միլիոն ռուբլու արտադրանք։ Արտադրության և աշխատանքի արտադրողականության աճի արագ տեմպերի հասան մեքենաշինության, սարքաշինության և ռադիոէլեկտրոնային արդյունաբերության ձեռնարկությունները։ Զգալիորեն բարելավվեց թողարկվող արտադրանքի որակը. 430 արտադրատեսակ-

ների շնորհվեց պետական որականիշ։ Այժմ թողարկվում է որակի բարձրագույն կատեգորիա ունեցող 788 արտադրատեսակ, որոնց տեսակարար կշիռը արդյունաբերության ընդհանուր ծավալի մեջ կազմում է 8,4 տոկոս։ Յուրացվել և սկսվել է 153 անուն նոր տեսակի՝ արդի տեխնիկական պահանջներին համապատասխան արդյունաբերական արտադրանքի, այդ թվում՝ էլեկտրահաշվիչ «Նաիրի—4» մեքենաների, բարձր ճշգրտության մետաղահատ հաստոցների, էլեկտրական սարքերի, ժողովրդական սպառման ապրանքների թողարկումը։

Արդյունաբերական ձեռնարկություններում ծավալված սոցիալիստական մրցության ընթացքում ավելի արմատավորվեց ու զարգացավ աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի շարժումը։ Աշխատավորական զանգվածների խորքերում ծնվեցին և այժմ լայն տարածում են գտել հայրենասիրական նոր նախաձեռնություններ։ Դրանցից է նաև Երևանի աշխատավորների՝ «Աշխատել առանց ետ մնացողների, արդյունավետ, բարձր որակով» նախաձեռնությունը, որը պաշտպանեց ՀԿԿ Կենտկոմի բյուրոն և հանձնարարեց այն տարածել հանրապետության բոլոր ձեռնարկություններում ու կառույցներում։ Երևանցիները պատվով կատարեցին իրենց խոստումը. տարվա արդյունքներով քաղաքի բոլոր ձեռնարկությունները կատարեցին արտադրանքի իրացման պլանը։ Առանց ետ մնացողների եզրափակեցին տարին նաև Կիրովականի, Ղափանի, Հոկտեմբերյանի, Թումանյանի, Սևանի և մի շարք այլ շրջանների աշխատավորները։

Գործով պատասխանելով կուսակցության XXV համագումարի և ՍՄԿԿ Կենտկոմի որոշումներին, հանրապետության մի շարք առաջավոր ձեռնարկություններ նոր թափ են հաղորդել արտադրության նոր ռեզերվների հայտաբերման, խնայողության ռեժիմի ուժեղացման, աշխատանքային կարգապահության բարձրացման, ստանձնած պարտավորությունների կատարման պատվավոր գործին։ Իրենց պարտքի նկատմամբ գիտակցական, պատասխանատու վերաբերմունքի օրինակ են դրսևորում ու նորանոր նախաձեռնություններ հանդես բերում և արտադրության առաջավորները։ Նրանց թվում են Լենինականի Մայիսյան ապստամբության անվան տեքստիլ կոմբինատի ենթավարպետ, ՍՍՀՄ պետական մրցանակի դափնեկիր Մ. Ստեփանյանը, Երևանի էլեկտրասարքատների գործարանի փաթաթման տեղամասի պետ Վ. Նազարյանը, սոցիալիստական աշխատանքի հերոս, ՍՄԿԿ XXV համագումարի պատգամավոր, Երևանի մետաքսի կոմբինատի ջուլհակուհի Ծ. Գալստերյանը, «Քաջարանշինի» բրիգադավար Գ. Գևորգյանը և շատ ուրիշներ։ Իսկ «Այդպիսի մարդիկ, որոնք իրենց օրինակով լուսավորում են առաջընթացի ուղին, մեր երկրում հարյուր-հազարներ են,— ասաց Լ. Ի. Բրեժնևը Տուլայում։— Այդպես էլ պետք է լինի։ Քանի որ ապրում է սովետական ժողովուրդը, քանի որ երկիրն առաջ է տանում կոմունիստների կուսակցությունը, միշտ կլինեն բոցավառ սրտով, մեր անմահ կոմունիստական գործին անսահմանորեն նվիրված մարդիկ։ Փառք ու պատիվ նրանց»։

Հանրապետության գյուղատնտեսական աշխատողների համար հնգամյակի առաջին տարին նշանավորվեց նրանով, որ կոլտնտեսությունների և սովխոզների համախառն արտադրանքն ամենաբարձրն էր անցած բոլոր տարիների համեմատ և կազմեց 518 մլն ռուբլի։ Դա 5,6 տոկոսով ավելի է, քան 1975 թվականին։ Հանրապետությունը խաղողից բացի կատարեց հողագործական ու անասնապահական բոլոր մթերքների արտադրության և պետությանը դրանց վաճառքի պլանային առաջադրանքները։ Առաջին անգամ նվաճվեց 300 հազար տոննա հացահատիկի արտադրության բնագիծը, հեկտարի միջին բերքատվությունը կազմեց 19 ցենտներ։ Հիանալի բերք աճեցրին նաև բանջարաբույծները՝ 311 հազար տոննա։ Ռեկորդային ցուցանիշների հասան նաև ճակնդեղագործները, որոնք աճեցրին և հավաքեցին 167 հազար տոննա շաքարի հումք։

Առաջընթաց քայլ կատարեցին հանրապետության անասնապահները, որոնք 1975 թ. համեմատությամբ արտադրեցին 6,6 տոկոսով ավելի միս, 8,4



տոկոսով ավելի կաթ, 7,5 տոկոսով ավելի ձու։ Հանրապետությունում առաջին անգամ կովերի միջին կաթնատվությունը հասավ 1.809 կգ։ Մեծ աշխատանք կատարվեց կերի բազան ամրապնդելու և անասունների ձմեռումը հաջող անցկացնելու ոլորտում։ Ստանձնած պարտավորությունների կատարման գործում բարձր արդյունքների հասան Ախուրյանի, Նաիրիի և Հրազդանի շրջանները։ Համամիութենական սոցիալիստական մրցության մեջ ձեռք բերած հաջողությունների, 1976 թ. գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ու պետությանը դրանց վաճառքը ավելացնելու, պլանների և սոցիալիստական պարտավորությունների կատարման գործում ցուցաբերած աշխատանքային արիության համար հանրապետության 1.400 առաջավորներ արժանացան ՍՍՀՄ շքանշանների ու մեդալների։

Անցած տարին արդյունավետ եղավ նաև հանրապետության շինարարների համար։ Կապիտալ ներդրումների ընդհանուր ծավալը մեծացավ 2 տոկոսով, գործարկվեցին 1.075 մլն ռուբլու հիմնական ֆոնդեր, որ 41 տոկոսով ավելի է, քան 1975 թվականին։ Շահագործման հանձնվեցին 1.150 հազար քառ. մետր ընդհանուր մակերեսով բնակելի տներ, 34 հազար տեղով դպրոցներ, 920 մահճակալով հիվանդանոցներ։ ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների կատարման գործում ճոշոր ներդրում էր Հայաստանի ատոմային էլեկտրակայանի առաջին բլոկի գործարկումը։ Այդ նշանակալի աշխատանքային հաղթանակի առթիվ էլեկտրակայանի շինարարներին, մոնտաժողներին և կառույցի բոլոր մասնակիցներին ջերմորեն շնորհավորեց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը։ Տարեվերջին շահագործման հանձնվեց Սևան—Շորժա—Զոդ էլեկտրիֆիկացված նոր երկաթգիծը, որը էական նշանակություն ունի Սևանի ավազանի շրջանների և ամբողջ հանրապետության էկոնոմիկայի զարգացման համար։ Գործարկվեցին բազմաթիվ արտադրական օբյեկտներ և նոր կարողություններ։

Համակողմանիորեն վերլուծելով անցած տարում հանրապետության ժողովրդական տնտեսության զարգացման բնագավառում ձեռք բերված արդյունքները, կուտակված դրական փորձը և դրանք գնահատելով որպես աշխատավորների ստեղծագործական լարված ու ոգեշունչ աշխատանքի, որպես սոցիալիստական մրցության կազմակերպման ոլորտում կուսակցական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների բազմակողմանի կազմակերպական գործունեության արգասիք, հանրապետական ակտիվի ժողովը միաժամանակ հանգամանորեն անդրադարձավ եղած թերություններին, նշեց դրանց վերացման ուղիները և հնգամյակի երկրորդ տարվա համար սահմանված բնագծերը նվաճելու գործում այդ կազմակերպությունների անելիքներն ու խնդիրները։ Ժողովը միահամուռ ընդունեց 1977 թ. պլանը ժամկետից շուտ կատարելու համար հանրապետության ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառների աշխատողների ստանձնած սոցիալիստական պարտավորությունները, նոր ուժով դրսևորելով կուսակցական կազմակերպությունների, աշխատավորական բոլոր կոլեկտիվների՝ ՍՄԿԿ XXV համագումարի որոշումները, ամբողջ հնգամյակի առաջադրանքները հաջողությամբ կատարելու, երկրի էկոնոմիկայի, կուլտուրայի հետագա զարգացման, սովետական ժողովրդի բարեկեցության բարձրացման ասպարեզում արժանի ավանդ ներդնելու վճռականությունը։

Հայաստանի կոմունիստական կուսակցության XXVI համագումարը առաջադրեց պետական պլանային կարգապահության ամրապնդման հարցը, նշվեց, որ պլանը օրենք է և արտադրության բոլոր աշխատողների պարտքն է՝ ապահովել դրա անվերապահ կատարումը։ Մինչդեռ հանրապետությունում դեռևս կան ձեռնարկություններ, որոնք չեն կատարում արտադրանքի իրացման պլաններն ու ստանձնած պարտավորությունները։ Ճիշտ է, դրանց թիվը 1975 թ. համեմատ կրճատվել է՝ 43-ից հասել 33-ի, բայց դա ևս քիչ չէ։ Արտադրության ծավալի պլանը չեն կատարել 43 ձեռնարկություններ։ Դրանց թվում են Ջրաբերդյանի լիպինի արտադրության փորձնական արդյունաբերական գործարանը, Լենինականի «Էլեկտրակենցաղսարք» և Հղկող հաստոցների, Տի-

դրությունը կրճատվեց Ամասիայի, Ղափանի, Սպիտակի, Շամշադինի շրջաններում։ Խաղողագործական 17 շրջաններից 12-ը չկատարեցին խաղողի վաճառքի պլանները և պետությանը պակաս տվեցին 18 հազար 800 տոննա խաղող։ Այս մասին հանգամանորեն խոսվեց նաև հունվար ամսին տեղի ունեցած գյուղատնտեսության աշխատողների հանրապետական կուսակցական ակտիվի ժողովում։ ՍՄԿԿ Կենտկոմի՝ գյուղատնտեսության աշխատողներին և Սովետական Միության բոլոր աշխատավորներին ուղղված նամակի առնչությամբ՝ հանրագումարի բերելով 1976 թ. գյուղատնտեսական տարվա արդյունքները, ակտիվի ժողովը նշեց տասներորդ հնգամյակի երկրորդ տարվա կարևորագույն առաջադրանքների իրականացման ուղիները։

Խնդիր դրվեց, որ հանրապետության գյուղատնտեսությունը հնգամյակի երկրորդ տարում նույնպես պետք է զարգանա արագ տեմպերով՝ արտադրության մասնագիտացման և համակենտրոնացման հիման վրա, արտադրության հետևողական ինտենսիվացման, նրա նյութատեխնիկական բազայի հետագա ամրապնդման ուղիով։ Ծրագրվում է հանրային սեկտորում գյուղատնտեսության համախառն արտադրանքը հասցնել 550 մլն ռուբլու, ընդ որում՝ անցած տարվա համեմատությամբ, աճը մեծացնել 6,2 տոկոսով։ Պետությանը վաճառել 50 հազար տոննա հացահատիկ, 283 հազար տոննա բանջարեղեն, 218 հազար տոննա խաղող, 96 տոննա պտուղ, 76 հազար տոննա կարտոֆիլ, 130 հազար տոննա շաքարի ճակնդեղ, 16,4 հազար տոննա ծխախոտ, 89 հազար տոննա միս, 257 հազար տոննա կաթ, 4,9 հազար տոննա բուրդ, 237 միլիոն ձու և այլն։ 1977 թ. համար բարձր պարտավորություններ են ստանձնել Անիի և Սիսիանի շրջանները, Կրասնոսելսկի հողագործները, Հրազդանի անասնապահները, Թալինի ծխախոտագործները, կոլտնտեսությունների և սովխոզների առաջավոր շատ կոլեկտիվներ, արտադրության հարվածայիններ և նորարարներ։

Ժամանակին նվաճել սահմանված բնագծերը և ստանձնած պարտավորությունները՝ նշանակում է ամենից առաջ բարձրացնել գյուղատնտեսության մարզում աշխատող մարդկանց պատասխանատվությունը, բազմապատկել նրանց ձեռներեցությունը, խելացիորեն, տնտեսաբար օգտագործել պետության կողմից գյուղատնտեսության զարգացմանը հատկացվող հսկայական ռեսուրսները, մոբիլիզացնել կոլտնտեսությունների, սովխոզների ներքին ռեզերվները, դրանով իսկ առավել ակտիվ իրագործել կուսակցության նախանշած ագրարային ստրատեգիական կուրսը։ Այդ իսկ առումով անհրաժեշտ է, որպեսզի կուսակցական կոմիտեները, կուսակցական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունները և գյուղատնտեսական մարմինները լայն աշխատանք ծավալեն մասսաներին խորությամբ բացատրելու ՍՄԿԿ Կենտկոմի նամակի նշանակությունը, մանրազնին վերլուծեն յուրաքանչյուր կոլտնտեսությունում և պետական տնտեսությունում, բրիգադում, օղակում, ֆերմայում տիրող իրավիճակը, 1976 թ. արդյունքների հիման վրա գործնական միջոցառումներ մշակեն աշխատանքում տեղ գտած թերությունները վերացնելու, առաջավոր փորձն ու գիտության նվաճումները, աշխատանքի կազմակերպման արդյունավետ ձևերն արտադրության մեջ արմատավորելու համար։ Կոլտնտեսությունների և սովխոզների պլանները պետք է ամրապնդել կազմակերպական և քաղաքական աշխատանքով, հատուկ վերահսկողության տակ առնել գյուղատնտեսական մթերքների արտադրության վճռական բոլոր տեղամասերը։

Նախապատրաստվելով ընթացիկ գյուղատնտեսական տարվան, ինչպես նշված է ՍՄԿԿ Կենտկոմի նամակում, պետք է առանձնահատուկ ուշադրություն դարձնել 1977 թ. խնդիրների հաջող լուծման համար խիստ կարևոր աշխատանքի՝ գարնանացանի կազմակերպված անցկացմանը, առաջին հերթին հոգ տանել հացահատիկի արտադրության հետագա զարգացման մասին, իրականացնել գյուղատնտեսական մթերքների համախառն արտադրանքի ավելացմանը նպաստող միջոցառումներ, հասնել այն բանին, որ ավելի լայնորեն ծավալվի սոցիալիստական մրցությունը բարձր բերքի ստացման և անասնապահական մթերքների արտադրության ավելացման նպատակով, որ յուրաքան-



չյուր աշխատավոր ըստ արժանվույն դիմավորի մեծ Հոկտեմբերի 60-ամյակը։

Ժողովրդական տնտեսության զարգացման և ժողովրդի նյութական բարեկեցության բարձրացման բնագավառում տասներորդ հնգամյակի խնդիրների իրականացման գործում կարևոր դեր է պատկանում կապիտալ շինարարությանը։ Կառուցել արագ, խնայողաբար և ժամանակակից տեխնիկական հիմքի վրա՝ ՍՄԿԿ XXV համագումարի առաջադրած այս պահանջը պետք է ուղենիշ լինի մեր բոլոր շինարարական կազմակերպությունների համար։ Սակայն, ինչպես ցույց են տալիս փաստերը, այդ բնագավառում ձեռք բերված արդյունքները թե՛ քանակական և թե՛ որակական տեսակետից չեն համապատասխանում ժողովրդական տնտեսության զարգացման արդի խնդիրներին։ Բավական է ասել, որ 1976 թ. կապիտալ ներդրումների տարեկան պլանը մեր հանրապետությունում կատարվեց ընդամենը 91,4 տոկոսով, շինմոնտաժային աշխատանքներինը՝ 96,3, իսկ հիմնական ֆոնդերի գործարկմանը՝ 65,7 տոկոսով։ Հայաստանի 111 կարևորագույն կառույցներից կապիտալ ներդրումների պլանը կատարեցին միայն 36-ը։ Շահագործման չհանձնվեցին մոտավորապես 160 հազար քառ. մետր բնակելի մակերես, 1.020 տեղով մանկապարտեզներ և մսուրներ, 238 տեղով դպրոցներ։ Դա հետևանք է այն բանի, որ առանձին մինիստրությունների (հատկապես արդյունաբերական շինարարության), գերատեսչությունների, պատվիրատու ձեռնարկությունների և կազմակերպությունների, շինարարական և մոնտաժային տրեստների ու վարչությունների ղեկավարներ անձեռներեցություն և ցածր պատասխանատվություն են ցուցաբերում այդ կարևոր գործի նկատմամբ, դեռևս անբավարար են զբաղվում կապիտալ շինարարության կազմակերպման բարելավման և եղած աշխատանքային ու նյութական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման հարցերով։ Շատ շինարարական և մոնտաժային կազմակերպություններ վատ են արմատավորում պրակտիկայում իրենց արդարացրած առաջավոր, մասնավորապես զլոբինյան բրիգադային տնտհաշվարկի մեթոդները։ Դեռևս ցածր է շինարարության որակը։

Շինարարական մինիստրությունների ու կառույցների ղեկավարների, կուսակցական, հասարակական կազմակերպությունների խնդիրն է արմատապես բարելավել գործերի վիճակը, բոլոր ուժերը ներդնել շինարարության որակի բարձրացման մասին Հայաստանի կոմկուսի Կենտկոմի, Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետի որոշումը կատարելու համար, հասնել այն բանին, որ տասներորդ հնգամյակը իրոք արդյունավետության և որակի հնգամյակ դառնա ժողովրդական տնտեսության այդ կարևոր ճյուղում։

Պետք է հատուկ ուշադրություն դարձնել շինարարության ինդուստրիալ բազայի հետագա ընդլայնմանն ու կատարելագործմանը, նվազեցնել անավարտ շինարարությունների ծավալը, կրճատել շինմոնտաժային աշխատանքների ժամկետներն ու արժեքը, ավելի արագ վերակառուցել գործող կարողությունները, առաջին հերթին ապահովել պլանավորված արտադրական հզորությունների, քաղաքացիական օբյեկտների և բնակելի տների գործարկումը։

Տասներորդ հնգամյակի կատարման աշխատանքի մեջ ներգրավվել են նաև հանրապետության գիտական և նախագծային կոնստրուկտորական կազմակերպությունների կոլեկտիվները, որոնք ձեռնարկել են մի շարք տեսական աշխատանքներ ու արժեքավոր գիտական հետազոտություններ, սակայն նրանց կարևոր խնդիրը մնում է գիտական հետազոտությունները պրակտիկ պահանջմունքների հետ է՛լ ավելի սերտ շաղկապելը, հետազոտությունների արդյունքներն ակտիվորեն և հաստատակամորեն գործնական իրականացման փուլին հասցնելը։ Գիտնականների ուշադրությունը պետք է կենտրոնացվի կոմպլեքսային պրոբլեմների լուծման վրա, հիմնարար հետազոտություններ անցկացնելու, գիտատեխնիկական մշակումներն արագացնելու և դրանց որակը բարձրացնելու վրա։

Վերջին տարիներին հանրապետությունում իրականացվել են առևտրի և կենցաղային սպասարկման ձեռնարկությունների աշխատանքի բարելավման մի շարք միջոցառումներ։ Բնակչության կենցաղային սպասարկման մինիս-

տրության սիստեմում հանրապետական արտադրական միավորումների կազմակերպումը հնարավորություն ընձեռեց անհրաժեշտ պայմաններ ստեղծել կենցաղային սպասարկման օբյեկտների մասնագիտացման, կոոպերացման և խոշորացման համար։ Սակայն հարկ է նշել, որ մինիստրությունները, գերատեսչությունները և սպասարկման ոլորտի կուսակցական կազմակերպությունները դեռևս անբավարար են ուսումնասիրում բնակչության պահանջարկը, արդյունաբերական ձեռնարկությունների հետ համատեղ քիչ են զբաղվում մեծ պահանջարկ վայելող ժողովրդական սպառման ապրանքների արտադրության ավելացման հարցերով։ Դեռևս շատ թերություններ և չլուծված հարցեր կան սովորողների, բանվորների և ծառայողների հասարակական սննդի կազմակերպման գործում, ցածր է կենցաղային սպասարկումների որակը։

Կուսակցական-տնտեսական ակտիվի ժողովը, անդրադառնալով այս հարցերին, կուսակցական, սովետական կոմերիտական և արհմիութենական կազմակերպություններին պարտավորեցրեց՝ հետևողականորեն զբաղվել սպասարկման կուլտուրայի և որակի մակարդակի բարձրացման խնդրով, ակտիվ պայքար մղել այդ ոլորտում եղած բացասական երևույթների դեմ, գործնականորեն գլխավորել և զարգացնել բանվորական վերահսկողության շարժումը։

Ժողովրդական տնտեսության առավել արագ զարգացումն ապահովելու և աշխատավորների կենսամակարդակն անշեղորեն բարձրացնելու նպատակով՝ կուսակցության արդյունավետ գործունեության մեջ կարևոր տեղ է գրավում սոցիալիստական մրցությունը։ Կուսակցությունն այն գնահատում է որպես տնտեսական և սոցիալական առաջադիմության հզոր լծակ, որպես աշխատավորների քաղաքական, աշխատանքային և բարոյական դաստիարակության դպրոց։ «Մրցությունը խոր ազդեցություն է գործում տնտեսական պրակտիկայի վրա, երկրի հասարակական-քաղաքական կյանքի վրա, բարոյական մթնոլորտի վրա,— նշեց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXV համագումարում։— Այսուհետև ևս համակողմանիորեն զարգացնել սոցիալիստական մրցությունը, աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի շարժումը՝ այսպիսին է մեր ընդհանուր մարտական լոզունգը»։

Ահա թե ինչու հանրապետության թե՛ կուսակցական ակտիվի և թե կուսակցական-տնտեսական ակտիվի ժողովները մեծ ուշադրություն նվիրեցին սոցիալիստական մրցության հետագա զարգացման և կատարելագործման հարցերին։ Խնդիր դրվեց, ելնելով «Արտադրության արդյունավետությունն ու աշխատանքի որակը բարձրացնելու, տասներորդ հնգամյակի առաջադրանքները հաջողությամբ կատարելու համար համամիութենական սոցիալիստական մրցության մասին» ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի որոշումից, ՍՄԿԿ Կենտկոմի նամակի պահանջներից, ավելի լայն թափ հաղորդել հանրապետությունում հնգամյակի բնագծերը նվաճելու համար ծավալված սոցիալիստական շարժմանը։ Կուսակցական այդ կարևորագույն փաստաթղթերում առաջ քաշված դրույթների, գործնական խնդիրների ու պահանջների անշեղ իրականացմանը պետք է նպաստի հանրապետության կուսակցական, արհմիութենական ու կոմերիտական կազմակերպությունների գործունեությունը։

Ղեկավարելով մրցությունը, նրանք պարտավոր են խրախուսել նորն ու առաջավորը, լայնորեն ներդնել լավագույն փորձը, ամեն կերպ նպաստել մասսաների ստեղծագործական նախաձեռնության զարգացմանը, ղեկավարների, մասնագետների, բոլոր աշխատողների ջանքերն ուղղել արդյունաբերության և գյուղատնտեսության հետագա ինտենսիվացմանը, հնգամյակի գլխավոր նպատակի՝ արդյունավետության և որակի բարձրացման ապահովմանը։

Կուսակցությունը պահանջում է, որպեսզի համաժողովրդական սոցիալիստական մրցությունը մշտապես աճի։ Իսկ այդ նշանակում է, որ կուսկազմակերպությունները պետք է չթուլացող հսկողություն սահմանեն, վերացնեն մրցության մեջ ձևականության տարրերը, այնպես անեն, որ լայնորեն կիրառվեն հնգամյակի հարվածայինների, հաղթող կոլեկտիվների բարոյական և նյութական խրախուսման նոր ձևերն ու հնարավորությունները։



Հնգամյա պլանի կատարումը համաժողովրդական գործ է, սոցիալիստական մրցության հետագա կատարելագործումը՝ սոցիալիստական պարտավորությունների և հանդիպական պլանների կենսագործման ռեալ ուղին։

Հոբելյանական հերթափոխը Հայաստանի աշխատավորների առջև դնում է բարձր պահանջներ։ Տասներորդ հնգամյակի երկրորդ տարում հանրապետության ժողովրդական տնտեսության զարգացման պլանը լարված է, բայց ռեալ։ Եվ կասկածից վեր է, որ այն կկատարվի հաջողությամբ։ Իսկ դրա համար կան բոլոր նախադրյալները։ Դրա գրավականն են այն խանդավառությունն ու բարձր տրամադրությունը, որ համակել են մեր աշխատավորներին, այն քաղաքական-կազմակերպական հսկայական նպատակասլաց աշխատանքը, որ կատարում են Հայաստանի կուսկազմակերպությունները։

Մեր հանրապետության աշխատավորներին իրոք մեծ լիցք ու ոգևորություն հաղորդեց ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի որոշումը, որով արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի բարձրացման, 1976 թ. ժողովրդա-տնտեսական պլանի հաջող կատարման համար ծավալված համամիութենական սոցիալիստական մրցության մեջ հաղթող է ճանաչվել և ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշին արժանացել նաև Սովետական Հայաստանը։

Օրերս բարձր պարգևը հանդիսավոր պայմաններում հանձնվեց հանրապետությանը։

Կուսակցությունը բոլոր ջանքերը գործադրում է անշեղորեն կենսագործելու Վ. Ի. Լենինի մեծ պատգամը՝ չբավարարվել ու չհանգստանալ ձեռք բերածով, շարունակ առաջ ընթանալ և հասնել առավել նշանակալի արդյունքների։ Հենց այդպիսի նպատակ են հետապնդում գյուղատնտեսության աշխատողներին, Սովետական Միության բոլոր աշխատավորներին ՍՄԿԿ Կենտկոմի հղած նամակը, համամիութենական սոցիալիստական մրցության մասին կուսակցության Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի, «Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 60-րդ տարեդարձի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշումները։ Այդպիսի ձգտմամբ են համակված նաև մեր հանրապետության աշխատավորները։ Ձեռքբերումները, բարձր ու պատվավոր պարգևները ոչ թե հանգստացնում, այլ նոր խիզախումների են մղում հանրապետության քաղաքների ու գյուղերի, գիտության ու կուլտուրայի մարդկանց։ Այդ են վկայում ամեն օր տեղերից ստացվող հաղորդումները։ Ի պատասխան կուսակցության կոչի, ամենուրեք ծնվում են հայրենասիրական նոր նախաձեռնություններ՝ ուղղված արտադրության և նրա արդյունավետության աճի ռեզերվների առավել օգտագործման, արտադրանքի որակի բարձրացման և նրա ինքնարժեքի իջեցման նպատակին։ Աշխատանքային կոլեկտիվները, զինվելով աջթևայինների փորձով, նոր բնագծեր են նշում հոբելյանական տարվա և հնգամյակի խնդիրները ամբողջությամբ կատարելու համար մղվող համաժողովրդական պայքարում։

Հայաստանի աշխատավորները լավ են սկսել հնգամյակը, ակտիվորեն ներգրավվել մեծ Հոկտեմբերի 60-ամյակի պատվին ծավալված ժողովրդական մրցության մեջ։ Սակայն հիմնական գործերն ու անելիքները դեռ առջևում են։ Հանրապետության կուսակցական կազմակերպությունների խնդիրն է՝ մարտականորեն գլխավորել մասսաների աշխատանքային ու քաղաքական այդ վերելքը, ուժեղացնել կազմակերպական-քաղաքական և գաղափարական-դաստիարակչական աշխատանքը, ամրապնդել պետական և կուսակցական կարգապահությունը, բարձրացնել կադրերի պատասխանատվությունը, ամեն ինչ անել հնգամյակի առաջին տարում ժողովրդական տնտեսության զարգացման բնագավառում ձեռք բերած բարձր տեմպերը պահպանելու, կուսակցության առաջադրանքների կատարման գործում նոր հաջողությունների հասնելու համար։

# ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԼԱՐՎԱԾՈՒԹՅԱՆ ԹՈՒԼԱՑՈՒՄԸ ԵՎ ԴԱՍԱԿԱՐԳԱՅԻՆ ՊԱՅՔԱՐԸ

**Ա. Խ. ԹԱՄԱԶՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների թեկնածու, դոցենտ

*ՍՄԿԿ XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ մեր երկրի կյանքում բացառիկ կարևոր իրադարձություն հանդիսացավ: Այն կրկին հռչակեց կուսակցության գերագույն նպատակը՝ ապահովել ժողովրդի կյանքի նյութական և կուլտուրական մակարդակի նշանակալի բարձրացում՝ սոցիալիստական սիստեմի առավելությունների հետ գիտատեխնիկական հեղափոխության նվաճումների օրգանական միացման, հանրային արտադրության արդյունավետության խիստ բարձրացման և աշխատանքի արտադրողականության աճի արագացման բազայի վրա: Այդ խնդրի լուծման նպատակով ՍՄԿԿ-ն պայքարում է ավելի բարենպաստ պայմաններ ապահովելու կոմունիստական խաղաղ շինարարության համար և սոցիալիստական պետությունների, բոլոր խաղաղասեր ժողովուրդների հետ մեկտեղ մարդկությունը փրկելու համաշխարհային բնաջնջող պատերազմի վտանգից:*

*ՍՄԿԿ XXV համագումարում նշվեց, որ կուսակցության և սովետական պետության միջազգային քաղաքականությունը խաղաղության, ժողովուրդների անվտանգության ու բարեկամության քաղաքականություն է, որ չորրորդ տասնամյակն է, ինչ սովետական ժողովուրդն ապրում է խաղաղ պայմաններում, ամրապնդվել են սոցիալիզմի դիրքերը, միջազգային լարվածության թուլացումը դարձել է առաջատար միտում:*

*Հայտնի է, որ տակավին 1971 թվականին ՍՄԿԿ XXIV համագումարը հռչակեց խաղաղության ծրագիրը, մի ծրագիր, որում սահմանվեցին միջազգային հարաբերությունների ասպարեզում հասունացած պրոբլեմների ամբողջական լուծման եղանակներն ու միջոցները: Այդ ծրագրի բուն իմաստը՝ ինչպես միջուկային, նմանապես և սպառազինման մրցավազքի կասեցման, ընդհուպ մինչև ընդհանուր ու լրիվ զինաթափման, փոխշահավետ համագործակցության, երկրագնդի վրա կայուն խաղաղության ապահովումն է:*

*Հենվելով սոցիալիզմի համաշխարհային սիստեմի հզորության և համախմբվածության, հակաիմպերիալիստական ու հակապատերազմական ուժերի վրա, քայլ առ քայլ կենսագործելով խաղաղության ծրագրի հիմնական դրույթները, ՍՄԿԿ-ն կարողացավ վանել միջուկային պատերազմի սպառնալիքը, խաղաղությունը դարձնել ավելի հուսալի, ավելի կայուն (տե՛ս Լ. Ի. Բրեժնև,* Ճառ ՍՄԿԿ Կենտկոմի պլենումում, *«Հայաստան» հրատ., 1976 թ., էջ 48):*

*Հիրավի, 70-ական թվականների սկիզբը նշանավորվեց միջազգային հա-*



*րաբերությունների զարգացման նոր փուլով: Սկսվեց անցումը «սառը պատերազմից» դեպի սոցիալական հակադիր սիստեմներ ունեցող պետությունների խաղաղ գոյակցություն, առճակատումից դեպի լարվածության թուլացում, միջպետական հարաբերությունների կարգավորում և խաղաղության ամրապնդում: Ելնելով ձեռք բերված արդյունքներից, ՍՄԿԿ XXV համագումարը խնդիր դրեց առավել հետևողականությամբ ու հաստատակամությամբ վարել այդ կուրսը: Այս առիթով Լ. Ի. Բրեժնևը նշել է. «...Սովետական Միությունը մտադիր է համբերատար կերպով ու հետևողականորեն որոնել տարբեր հասարակական կարգ ունեցող պետությունների խաղաղ փոխշահավետ համագործակցությունը զարգացնելու նորանոր ուղիներ, զինաթափման ուղիներ: Մենք անշեղորեն կմեծացնենք մեր ջանքերը կայուն խաղաղության համար մղվող պայքարում» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, «Հայաստան» հրատ., 1976 թ., էջ 37):*

*Հանրագումարի բերելով ՍՄԿԿ միջազգային գործունեության հիմնական արդյունքները, XXV համագումարը ժողովուրդների խաղաղության, ազատության և անկախության գործի համար հետագա պայքարի հասունացած խնդիրներ համարեց՝ սպառազինությունների մրցավազքի դադարեցումը, զինաթափումը, ռազմական օջախների վերացումը, Ասիայի անվտանգության ապահովումը, միջազգային հարաբերություններում ուժ չգործադրելու պայմանագրի կնքումը, գաղութատիրության ու ռասիզմի բոլոր օջախների վերացումը, լարվածության թուլացման նյութականացումը և այլն: Այդ բոլորն ամփոփվեց* խաղաղության և միջազգային համագործակցության, ժողովուրդների ազատության և անկախության հետագա պայքարի նոր ծրագրում, *որը հանդիսացավ ՍՄԿԿ XXIV համագումարի առաջադրած խաղաղության ծրագրի օրգանական շարունակությունը և հետագա զարգացումը:*

*Այն փոփոխությունները, որ կատարվել են միջազգային հարաբերությունների զարգացման ասպարեզում ՍՄԿԿ XXIV համագումարից հետո ընկած ժամանակահատվածում, օրինաչափ բնույթ ունեն: Դրանք առաջին հերթին կապված են համաշխարհային հեղափոխական պրոցեսի զարգացման, հետագա խորացման և սոցիալ-քաղաքական բնագավառում դասակարգային ուժերի հարաբերակցության փոփոխման հետ: 1973 թ. հոկտեմբերի 26-ին Լ. Ի. Բրեժնևը խաղաղասեր ուժերի Մոսկվայի համաշխարհային կոնգրեսում նշեց. «...այստեղ գլխավորը համաշխարհային ասպարեզում ուժերի հարաբերակցության ընդհանուր փոփոխումն է: Փոփոխում՝ ի վնաս «սառը պատերազմի», սպառազինությունների մրցավազքի կողմնակիցների... փոփոխում՝ հօգուտ խաղաղության և առաջադիմության ուժերի» (*Լենինյան կուրսով, *հ. 4, էջ 420): Երկրորդ, այդ փոփոխությունները կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի հետագա խորացման, իմպերիալիստական երկրների միջև մրցակցության ու պայքարի ուժեղացման հետևանքն են: Երրորդ, գիտատեխնիկական հեղափոխության զարգացման շնորհիվ ուժեղանում են միջազգային կապերը պետությունների միջև: Տեղի է ունենում արտադրության և փոխանակության ինտերնացիոնալացման ընդլայնում, ժողովուրդների միջև բազմակողմանի տնտեսական ու կուլտուրական կապերի աճ:*

*Խաղաղ գոյակցության սկզբունքների հիման վրա առաջացած միջազգային լարվածության թուլացման պրոցեսը, միջպետական հարաբերությունների խոր վերակառուցումը, առաջին հերթին՝ սոցիալիստական պետությունների, կոմունիստական ու բանվորական կուսակցությունների միջազգային ակտիվ գործունեության արգասիքն են: Կոմունիստներն իմպերիալիստական շրջանների կողմից միջազգային լարվածությունը սրելու քաղաքականության դեմ մղվող պայքարը և խաղաղության պաշտպանության գործը համարում են իրենց ստրատեգիական խնդիրը: Հանդես գալով լարվածության թուլացման օգտին, նրանք հարձակողական պայքար են մղում, որպեսզի այն դառնա հաստատուն և կայուն: Ավելին, «...Ո՛չ խաղաղությունը, ո՛չ էլ լարվածության թուլացումը,— նշել է Լ. Ի. Բրեժնևը,— համաշխարհային ասպարեզում չեն հաստատվում ինքնըստինքյան, որպես ինչ-որ նվիրաբերություն ի վերուստ: Դրանք կարող են*

ձեռք բերվել միայն բոլոր խաղաղասեր ուժերի՝ պետությունների, քաղաքական կուսակցությունների ու հոսանքների, հասարակական կազմակերպությունների և առանձին անձանց համառ, անդուլ պայքարով...» (նույն տեղը, էջ 439)։

Լ. Ի. Բրեժնևի ելույթներում, ՍՄԿԿ XXV համագումարի նյութերում տրված է միջազգային լարվածության թուլացման առկա պրոցեսի ամբողջական բնութագրությունը։ Տուլա քաղաքին հերոսի «Ոսկե աստղ» մեդալի հանձնման հանդիսավոր նիստում Լ. Ի. Բրեժնևը նշեց, որ «Լարվածության թուլացումը նախ և առաջ «սառը պատերազմի» հաղթահարումն է, անցումը պետությունների նորմալ, համահավասար հարաբերություններին։ Լարվածության թուլացումը պատրաստակամությունն է տարաձայնություններն ու վեճերը լուծելու ոչ թե ուժի միջոցով, ոչ թե սպառնալիքներով ու զենք շաչեցնելով, այլ խաղաղ միջոցներով, բանակցությունների սեղանի շուրջը։ Լարվածության թուլացումը որոշակի վստահությունն է և միմյանց օրինական շահերը հաշվի առնելու ընդունակություն»։

Միջազգային քաղաքական տեսանկյունից լարվածության թուլացման էությունն այն է, որպեսզի բացառվի ուժի գործադրումը կամ ուժի սպառնալիքը պետությունների միջև։ Դրա նպատակն է սանձահարել համաշխարհային նոր պատերազմի սպառնալիքը, իսկ դրա անվերապահ պայմաններից մեկը՝ խստիվ պահպանել ուրիշ պետությունների ներքին գործերին չմիջամտելու սկզբունքը։ Լարվածության թուլացումը նաև սոցիալ-քաղաքական երևույթ է, որը նշանավորում է համաշխարհային հակաիմպերիալիստական պայքարի զարգացման նոր կարևոր փուլ։ Դա նշանակում է, որ լարվածության թուլացումը ո՛չ միայն տարբեր հասարակարգ ունեցող պետությունների միջև խաղաղ գոյակցության սկզբունքների հաստատման պրոցես է, այլև դասակարգային քաղաքականություն, որը ծառայում է միջազգային պրոլետարիատի և բոլոր ժողովուրդների դասակարգային, ազգային-ազատագրական պայքարի շահերին։

ՍՄԿԿ XXV համագումարը շեշտեց, որ լարվածության թուլացումը բարենպաստ պայմաններ է ստեղծում սոցիալիզմի գաղափարների լայն տարածման համար։ Բայց մյուս կողմից, երկու սիստեմների գաղափարական հակամարտությունը դառնում է ավելի ակտիվ, իմպերիալիստական պրոպագանդան՝ ավելի խորամանկ։ Հատկապես դա վերաբերում է լարվածության թուլացման և դասակարգային պայքարի հարաբերակցության հարցին։ Իմպերիալիստական ռեակցիան զգալի ջանքեր է գործադրում, որպեսզի նսեմացնի լարվածության թուլացման նշանակությունը, կասկածներ հարուցի այդ պրոցեսի կայունության վերաբերյալ, աղավաղված ներկայացնի դրա բովանդակությունը։

Հակակոմունիզմի և «սառը պատերազմի» գաղափարախոսները, հաշվի չառնելով ռեալ իրականությունը, հեղափոխական փոփոխությունները, լարվածության թուլացման սկսված պրոցեսը համարում են ինքնախաբեություն, կոչ անելով սոցիալիստական պետությունների նկատմամբ վարել ռազմական ասպատակման քաղաքականություն։ Նրանք ցանկանում են իրենց իմպերիալիստական նպատակներն իրագործել «խաղաղ միջոցներով», որը նշանակում է տնտեսական ու քաղաքական ճնշում գործադրել ՍՍՀՄ-ի վրա։ «Գոյակցության ու թուլացման մեջ,— հայտարարում է Շտրաուսը,— Արևմուտքը պետք է տեսնի այն զենքը, որի օգնությամբ նա կարող է... հաղթահարել կոմունիզմը ներսից» (տե՛ս Мирное сосуществование и идеологическая борьба М., 1975 г., стр. 13)։ Ավելին, անգլիական պահպանողականների լիդեր Մ. Տետչերը Մեծ Բրիտանիայի կառավարությանը կոչ է անում վարել «ուժի դիրքից» քաղաքականություն, իսկ Արևմտյան Բեռլինի և Կոլումբիայի համալսարանների պրոֆեսոր Ռ. Լյովենտալը պնդում է, որ «սովետական քաղաքականության պրակտիկայում լարվածության թուլացման պահպանման հոգատարությունը համաձայնեցվում է Եվրոպայի ծայրամասերում և «երրորդ աշխարհում» հարձակողական գործողությունների հետ» (Проблемы мира и социализма», 1977 г., № 1, стр. 83—85)։ Հակակոմունիզմի գրչակների նման հայտարարությունները հիշեցնում են «սառը պատերազմի» ժամանակաշրջանը։



Բուրժուական գաղափարախոսների մեծ մասը միջազգային լարվածության թուլացումը հակադրում է դասակարգային պայքարին կամ համարում է հրաժարում հեղափոխական, դասակարգային քաղաքականությունից։ Ոմանք էլ լարվածության թուլացումը համարում են շահավետ միայն Սովետական Միության, սոցիալիստական երկրների համար։ Բուրժուական գաղափարախոսները չեն ցանկանում ըմբռնել այն անվիճելի ճշմարտությունը, որ խաղաղ գոյակցության քաղաքականությունը և միջազգային լարվածության թուլացումը վերաբերում են տարբեր հասարակարգ ունեցող պետությունների միջպետական հարաբերություններին, բայց չեն վերացնում և չեն կարող վերացնել կամ փոխել դասակարգային պայքարի օրենքները։ Լարվածության թուլացումը և դասակարգային պայքարը սերտորեն կապված են մեկը մյուսի հետ։ Դրանք արդի փուլում, կապիտալիզմից սոցիալիզմին անցման դարաշրջանում, հասարակության առաջընթացի դիալեկտիկայի երկու կողմերն են։ Այս առնչությամբ Լ. Ի. Բրեժնևը նշում է. «...հեղափոխությունը, դասակարգային պայքարը, ազատագրական շարժումները ես անկարելի է վերացնել պատվերով կամ համաձայնագրով։ Աշխարհում չկա այնպիսի ուժ, որը կարողանար ետ շրջել հասարակական կյանքի վերափոխման անխափանելի պրոցեսը։ Այնտեղ, որտեղ կա գաղութատիրություն, կլինի պայքար հանուն ազգային ազատագրության։ Այնտեղ, որտեղ կա շահագործում, կլինի պայքար հանուն աշխատանքի ազատագրության։ Այնտեղ, որտեղ կա ագրեսիա, այնտեղ կլինի նաև հակահարված ագրեսիային» (Լ. Ի. Բրեժնև, Լենինյան կուրսով, հ. 4, էջ 444—445)։ Ուրեմն լարվածության թուլացումը չի նշանակում պատմական պրոգրեսի օբյեկտիվ հասունացած պրոցեսների սառեցում, սոցիալ-քաղաքական ստատուս-քվո։ Այն համաձայնագիր չէ նեխած վարչակարգերի, հետադիմական ռեժիմների պահպանման համար։ Այն չի վերացնում ժողովրդական մասսաների սոցիալական ու ազգային ազատագրության համար մղվող պայքարը, ինչպես նաև սոցիալ-քաղաքական վերափոխությունների անհրաժեշտությունը։ Եվ պատահական չէ, որ ներկայումս, լարվածության թուլացման պայմաններում, ավելի ցայտուն են դրսևորվում սոցիալիզմի և կապիտալիզմի, բանվոր դասակարգի և մոնոպոլիստական բուրժուազիայի, ազգային ազատագրության և իմպերիալիզմի ու ռասիզմի, հասարակական պրոգրեսի և ռեակցիայի, խաղաղության ու ագրեսիայի ուժերի հակամարտությունները։

Այդ են վկայում հետևյալ փաստերը։ Լարվածության թուլացման պայմաններում սոցիալիզմի երկրները ձեռք բերեցին նոր, փայլուն հաջողություններ։ Այդ երկրների ինդուստրիան չորս անգամ ավելի արագ է զարգացել, քան կապիտալիստական պետությունների արդյունաբերությունը։ 1975 թ. սոցիալիստական երկրները երկու անգամ շատ արդյունաբերական արտադրանք թողարկեցին, քան «Ընդհանուր շուկայի» պետությունները։ Ռեալ սոցիալիզմը դարձել է աշխարհում ամենադինամիկ սոցիալ-տնտեսական ուժը, հասարակության զարգացման վճռական գործոնը։ Համաշխարհային իրադարձությունների ընթացքի վրա նրա ազդեցությունն ուղիղ համեմատական է տնտեսական, կուլտուրական, քաղաքական և գիտա-տեխնիկական բնագավառներում ձեռք բերված հաջողություններին։ Այժմ, քան երբեք, ավելի է ամրապնդված սոցիալիզմի դիրքերն ամբողջ աշխարհում։ Վիետնամի ժողովուրդը փայլուն հաղթանակ տարավ ԱՄՆ-ի իմպերիալիզմի նկատմամբ, Կուբան դուրս եկավ իմպերիալիզմի քաղաքական ու տնտեսական բլոկադայից և աշխարհի ավելի քան 60 պետությունների հետ հաստատել է դիվանագիտական, տնտեսական ու կուլտուրական հարաբերություններ։ Սոցիալիստական պետությունների ջանքերի շնորհիվ ԳԴՀ-ն արժանացավ համընդհանուր ճանաչման և դարձավ ՄԱԿ-ի անդամ։ 1971 թ. ԳԴՀ-ը դիվանագիտական հարաբերություններ ուներ միայն 20 պետությունների հետ, իսկ ներկայումս՝ 121-ի։ ԳՖՀ-ի հետ կնքված պայմանագրերով հաստատվեց ԳԴՀ, ԼԺՀ և ՉՍՍՀ արևմտյան սահմանների անխախտությունը։

Որոշակիորեն վերակառուցվեցին ՍՍՀՄ-ի և սոցիալիստական մյուս եր-

կրների միջպետական հարաբերությունները ԱՄՆ-ի հետ։ Բավական է նշել, որ ՍՄԿԿ XXIV և XXV համագումարների միջև ընկած ժամանակաշրջանում տեղի է ունեցել սովետա-ամերիկյան վեց հանդիպում, ստորագրվել են 40-ից ավելի պայմանագրեր և համաձայնագրեր, որոնցից շատերը ներկայումս կենսագործվում են։ Ինչպես նկատել է Լ. Ի. Բրեժնևը «...դրանք քաղաքական և իրավական լուրջ բազա ստեղծեցին խաղաղ գոյակցության սկզբունքներով ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի փոխշահավետ համագործակցության զարգացման համար։ Դրանք որոշակի չափով նվազեցնում են միջուկային պատերազմի առաջացման վտանգը։ Հենց դա էլ մենք համարում ենք վերջին հինգ տարում սովետա-ամերիկյան հարաբերությունների զարգացման հիմնական արդյունքը» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 29)։

Շոշափելի փոփոխություններ տեղի ունեցան Եվրոպայում, որտեղ սոցիալիզմի դիրքերն ավելի ամուր են, պետությունների միջև հարաբերությունները՝ ավելի կայուն։ Այստեղ գումարվեց և հաջողությամբ ավարտվեց անվտանգության ու համագործակցության համաեվրոպական խորհրդակցությունը (1975 թ.), «Հանուն Եվրոպայի խաղաղության, անվտանգության, համագործակցության և սոցիալական առաջադիմության» թեմայով Եվրոպայի կոմունիստական ու բանվորական կուսակցությունների կոնֆերանսը, Վարշավայի պայմանագրի մասնակից պետությունների քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեի խորհրդակցությունը, որն ընդունեց Դեկլարացիա «Հանուն միջազգային լարվածության թուլացման նոր բնագծերի, հանուն Եվրոպայի անվտանգության ամրապնդման և համագործակցության զարգացման»։ Այսպիսով, եվրոպական մայրցամաքում լարվածության թուլացման պրոցեսը, պետությունների միջև վստահության ու բազմակողմանի համագործակցության հարաբերությունները դառնում են կայուն, իսկ լարվածության թուլացումը տարբեր սոցիալ-տնտեսական կարգ ունեցող պետությունների միջև աստիճանաբար նյութականացվում է։

Վերջին տասնամյակի իրադարձությունները վկայում են, որ կապիտալիզմի սիստեմը դառնում է ավելի անկայուն, հարմարվողական։ Այստեղ արտադրության խիստ կրճատումը և գործազրկության աճը միահյուսվում են կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի արդյունք հանդիսացող այնպիսի լուրջ ցնցումների հետ, ինչպիսիք են՝ տնտեսական (վալյուտային, էներգետիկ, հումքային), քաղաքական ու բարոյական ճգնաժամերը։ Ավելին, շարունակում է հզորանալ հակամոնոպոլիստական պայքարը։ Դասակարգային ու ազատագրական պայքարի հարվածների տակ փուլ եկավ ֆաշիստական վարչակարգը Պորտուգալիայում, տապալվեց սև գնդապետների դիկտատուրան Հունաստանում, միապետությունը՝ Հաբեշստանում, կրախի ենթարկվեց ֆրանկոյական վարչակարգը Իսպանիայում։ 1965 թ. զարգացած կապիտալիստական երկրներում մասսայական գործադուլներին և ցույցերին մասնակցել են 20 մլն աշխատավորներ, իսկ 1974—75 թթ.՝ 75 մլն մարդ (տե՛ս Политическое самообразование, 1976 г., № 6)։

Լարվածության թուլացման պայմաններում լուրջ տեղաշարժեր կատարվեցին զարգացող պետությունների ներքին կյանքում և միջազգային հարաբերություններում։ Ինչպես հայտնի է, ժողովուրդների ազատագրական պայքարի հետևանքով գաղութատիրությունը փլուզվեց խաղաղ գոյակցության պայմաններում, իսկ նրա կործանման եզրափակիչ ակտը տեղի ունեցավ Աֆրիկայում լարվածության թուլացման տարիներին։ Գվինեա-Բիսաուի, Կանաչ հրվանդանի կղզիների, Մոզամբիկի և Անգոլայի ժողովուրդները պատմական հաղթանակ ձեռք բերեցին իմպերիալիզմի և նեոգաղութատիրության դեմ մղվող ազգային-ազատագրական պայքարում։ Դադարեցվեց ԱՄՆ-ի ինտերվենցիան Հարավ-Արևելյան Ասիայում, որտեղ ձևավորվեցին Վիետնամի Սոցիալիստական Հանրապետությունը, Լաոսի և Կամպուչիի ազգային անկախ պետությունները։

Ավելի ու ավելի է ուժեղացել Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի ժողովուրդների պայքարը արտաքին և ներքին շահագործողների դեմ։



Չնայած ներքին և արտաքին ռեակցիայի ուժեղացող դիմադրությանը, այնուհանդերձ կարևոր պրոգրեսիվ փոփոխություններ են կատարվում նաև սոցիալիստական կողմնորոշում ունեցող արաբական, ասիական և աֆրիկյան երկրների տնտեսական և քաղաքական կյանքում։ Հենվելով սոցիալիստական պետությունների, բոլոր պրոգրեսիվ ուժերի օգնության ու պաշտպանության վրա, Ալժիրը, Բիրման, Գվինեան, Իրաքը, Կոնգոյի Ժողովրդական Հանրապետությունը, Եմենը, Տանզանիան, Անգոլան և այլ երկրներ հեռանկարային կուրս են վերցրել՝ կառուցելու սոցիալիստական հասարակարգ։

— Իմպերիալիստական շրջանները երկու տասնամյակ առաջ Լատինական Ամերիկան համարում էին հուսալի մայրցամաք։ Բայց նրանք սխալվեցին։ Կուբայական հեղափոխության հաղթանակը լավ օրինակ տվեց մայրցամաքի ժողովուրդներին։ Դրանից հետո պրոգրեսիվ դեմոկրատական վերափոխություններ տեղի ունեցան Պերուում, ակտիվ հակաիմպերիալիստական գործողություններ՝ Պանամայում։ Զգալիորեն ակտիվացել է Էկվադորի, Մեքսիկայի, Վենեսուելայի աշխատավորների, բոլոր հայրենասիրական ուժերի պայքարը ազգային և սոցիալական ազատագրության, ագրարային ռեֆորմի իրականացման, հասարակական ու քաղաքական կյանքի դեմոկրատացման, խաղաղության և միջազգային անվտանգության համար։ Ներկայումս այդ մայրցամաքում չկա մի ժողովուրդ, որ այս կամ այն ձևով չպայքարի իմպերիալիզմի և տեղական ռեակցիայի դեմ։ Իմպերիալիզմի դեմ ուղղված մասսայական հեղափոխական գործողությունները խաղաղ գոյակցության քաղաքականության իրագործման պայմաններից մեկն է։ Ուստի, ոչ սոցիալիստական պետություններում տեղի ունեցող ներքաղաքական իրադարձությունները՝ քաղաքական և ազգային-ազատագրական շարժումներն անխուսափելի են, որովհետև լարվածության թուլացումը չի վերացնում հակամարտ հասարակության դասակարգային պայքարի օրենքները, չի նշանակում «սոցիալ-քաղաքական ստատուս-քվոյի սառեցում»։

Միջազգային հարաբերությունների լարվածությունը և դրա հետ կապված իմպերիալիստական ագրեսիայի սպառնալիքը, տնտեսական և քաղաքական ճնշումը, տարբեր ուղիներով քայքայիչ գործունեությունը դրսից հարկադրում են սոցիալիստական պետություններին՝ զգալի միջոցներ տրամադրել համաշխարհային սոցիալիզմի պաշտպանունակությունն ամրապնդելու, հեղափոխական շարժման ձեռք բերած նվաճումները պաշտպանելու համար։ Այս բոլորն այս կամ այն ձևով ազդում են նաև հասարակական կյանքի շատ կողմերի վրա։ Եվ հասկանալի է, որ լարվածության թուլացումը հնարավորություն է ընձեռում նոր ֆորմացիայի օբյեկտիվ օրենքների լայն գործունեության համար, հասարակական արտադրությունը ծառայեցնելու առաջին հերթին խաղաղ նպատակներին, աշխատավորների նյութական և հոգևոր պահանջմունքների բարելավմանը։

Կապիտալիստական երկրների համար միջազգային լարվածությունը նշանակում է «կոմունիստական վտանգի» պատրվակով տնտեսության միլիտարիզացման աճ, ռազմաարդյունաբերական շրջանների շահույթների ուռճացում։ Բավական է նշել, որ ներկայումս ԱՄՆ-ը ավելի շատ ռազմական կործանարար տեխնիկա է վաճառում այլ պետությունների, քան բոլոր կապիտալիստական երկրները՝ միասին վերցրած։ Միայն վերջին հինգ տարիների ընթացքում ռազմական տեխնիկայի և հանդերձանքի արտահանությունը ԱՄՆ-ից ավելացել է 14 անգամ, հասնելով՝ 1976 թ. 13 միլիարդ դոլարի (տե՛ս Проблемы мира и социализма, 1977 г., № 1, стр. 95)։ Իզուր չէ, որ ամերիկյան սենատոր Էդ. Քեննեդին նշել է, թե ողբերգական է, որ մենք դարձել ենք աշխարհի բոլոր երկրները զենք առաքողներ։

Կապիտալիստական պետությունների համար լարվածությունը նշանակում է նաև բանվորական և դեմոկրատական շարժման ճնշում, հակաբանվորական արտակարգ օրենքների կիրառում, աշխատավորների տարրական դեմոկրատական իրավունքների վերացում, պրոիմպերիալիստական ռեժիմների պահպանում և այլն։ Հասկանալի է, որ լարվածության թուլացումը, դասակարգային

պայքարի ակտիվացումը խիստ սահմանափակում է անպատիժ կերպով նման քաղաքականություն իրագործելու հնարավորությունը:

Այս բոլորը, իհարկե, չի նշանակում, թե իբր միջազգային լարվածության թուլացումը օգտավետ է միայն սոցիալիստական պետությունների, դեմոկրատական բոլոր ուժերի համար: Այն օգտակար է նաև կապիտալիստական երկրների համար, որովհետև լարվածության թուլացումը, միջպետական հարաբերություններում խաղաղ գոյակցության սկզբունքների հաստատումը ապահովում են բոլոր պետությունների, բոլոր ժողովուրդների համար հիմնական խնդրի լուծումը՝ ատոմային պատերազմի կանխումը, գլոբալ ոչնչացման սպառնալիքի վերացումը: Լ. Ի.Բրեժնևը 1976 թ. հոկտեմբերի 5-ին ֆրանսիական հեռուստատեսության տեսաբան Իվ Մուրուզիի հետ ունեցած հարցազրույցի ժամանակ ուղղակի հայտարարեց, որ Արևմուտքում պետությունների միջև բեղմնավոր շփման, առևտրա-տնտեսական կապերի զարգացման, գիտա-տեխնիկական և կուլտուրական փոխանակումների աճի մասին խոսում են որպես միակողմանի երթևեկության փողոցի, որն իբր դարձյալ շահավետ է Սովետական Միության համար: «Այնպես է ստացվում,— շարունակում է Լ. Ի. Բրեժնևը,— որ այն ամեն լավը, ամեն դրականը, ինչ տեղի է ունենում միջազգային գործերում, օգուտ է բերում միայն Սովետական Միությանը... Բայց, անշուշտ, իրականում դա այդպես չէ... Լարվածության թուլացումը անհրաժեշտ է միջազգային նորմալ շփմանը մասնակցող բոլոր երկրներին: Ուստի և չափազանցություն չի լինի ասել, որ լարվածության թուլացմանը ցույց տրվող վերաբերմունքն այսօր փաստորեն այս կամ այն պետության քաղաքականության չափանիշն է, որոշում է յուրաքանչյուր քաղաքական գործչի դեմքը»:

Արդի դարաշրջանում դասակարգային պայքարի հիմնական ձևերից մեկը երկու հակադիր սիստեմներ ունեցող պետությունների միջև մղվող գաղափարական պայքարն է: Բուրժուական գաղափարախոսները ցանկանում են խաղաղ գոյակցության սկզբունքները և լարվածության թուլացման պրոցեսը տարածել գաղափարախոսության բնագավառում: Վերջին ժամանակներս նրանք ուղղակի հայտարարում են, թե իրենք ընդունում են խաղաղ գոյակցության սկզբունքները, բայց առաջարկում են մի շարք «վերապահումներ» և «լրացումներ»: Տարածելով խաղաղ գոյակցության և գաղափարական պայքարի անհամատեղելիության դրույթը, նրանք պահանջում են «դադարեցնել» գաղափարական պայքարը հանուն խաղաղ գոյակցության պահպանման:

Բուրժուական գաղափարախոսներից ողջամիտները հարմարվում են միջազգային ասպարեզում ուժերի հարաբերակցության արդի փոփոխությանը, բայց և պահանջում են սոցիալիստական պետություններից «վճարել» լարվածության թուլացման համար: Ինչպես նշել է Լ. Ի. Բրեժնևը, նրանք կամպանիա են ծավալել մեր հասարակարգի «լիբերալացման» և սոցիալիստական երկրներում «մարդու իրավունքները պաշտպանելու» կեղծավոր լոզունգի ներքո: «Խոսում են «լիբերալացման» մասին,— շարունակում է Լ. Ի. Բրեժնևը,— բայց նկատի ունեն սոցիալիզմի ռեալ նվաճումների վերացումը, սոցիալիստական երկրների ժողովուրդների սոցիալ-քաղաքական իրավունքների խախտումը» (Լ. Ի. Բրեժնև, Լենինյան կուրսով, հ. 4, էջ 447): Ըստ էության, մեր ընդդիմախոսներին հետաքրքրում է ոչ թե անհատի բազմակողմանի և հարմոնիկ զարգացումը սոցիալիստական երկրներում, այլ այն, թե ինչո՞ւ այդ անհատները հանդես չեն գալիս սոցիալիստական կարգերի դեմ: Ավելին, պահանջում են պլյուրալիզմ սոցիալիստական երկրների քաղաքական կազմակերպության սիստեմում: Իսկ այդ նշանակում է ոչ թե սոցիալիստական հասարակության տարբեր դասակարգերի, սոցիալական խմբերի ու խավերի շահերի համաձայնեցված արտահայտություն, այլ հասարակության պառակտման հնարավորություն, քաղաքական օպոզիցիայի կազմավորում, քաղաքական ուժերի «ազատ խաղ», հակասոցիալիստական ուժերի գործողությունների ազատություն:

Բուրժուական գաղափարախոսությունը լարվածության թուլացման պրոցեսը մեկնաբանում է նաև տխրահռչակ «կոնվերգենցիայի» տեսությամբ: Այդ



կոնցեպցիան նոր չէ, բայց ներկայումս, լարվածության թուլացման պայմաններում, նորից առաջադրվում է՝ նպատակ ունենալով ցույց տալ, որ բարենպաստ պայմաններ են ստեղծվել սոցիալիզմի և կապիտալիզմի «մերձեցման» համար: Երկու հակադիր սիստեմների «մերձեցման» կամ «աճող նմանության» տեսությունը մի փորձ է կապիտալիստական սիստեմի տնտեսական, քաղաքական և գաղափարական խորացող ճգնաժամը քողարկելու համար:

Ամեն մի գաղափարախոսություն դասակարգային բնույթ ունի: Սոցիալիստական պետությունների քաղաքականությունը նույնպես դասակարգային է այն պարզ պատճառով, որ մեկնում է հակադիր սոցիալական կարգ ունեցող պետություններում եղած խոր տարբերությունների ռեալ ըմբռնումից, և դա օբյեկտիվորեն անխուսափելի է դարձնում երկու սիստեմների մրցությունը, գաղափարների պայքարը: Այստեղից հետևում է. առաջին, ՍՍՀՄ-ը և սոցիալիստական մյուս երկրները ձգտում են, որ տարբեր սոցիալական կարգ ունեցող պետությունների միջև մրցությունը լինի խաղաղ, կոնստրուկտիվ և ոչ թե ռազմական մրցակցության և ավերիչ պատերազմների բնույթ կրի: Երկրորդ, գաղափարական պայքարը ոչ ոք չի կարող վերացնել, այնպես, ինչպես ոչ ոք չի կարող վերացնել դասակարգային պայքարը: Գաղափարներում իրենց արտացոլումն են գտնում դասակարգերի շահերը, պատկերացումները նրանց նպատակների, հասարակության զարգացման օբյեկտիվ պրոցեսների, զարգացման ուղիների վերաբերյալ: Եվ քանի որ դասակարգերի շահերը, նպատակները, պատկերացումները բախվում են, ուրեմն անխուսափելի է նաև գաղափարական պայքարը:

Արդի փուլում փոխվում են նաև գաղափարական պայքարի ձևերը: Հայտնի է, որ «սառը պատերազմի» տարիներին հակակոմունիզմի հիմնական զենքը «հոգեբանական պատերազմն էր»: Ընդ որում, գաղափարական պայքարը տարվում էր կեղծիքի, զրպարտության, ապակողմնորոշելու, ահաբեկման միջոցներով, որոնց նպատակն էր կույր թշնամանք առաջացնել սոցիալիզմի նկատմամբ: Ակնհայտ է, որ գաղափարական պայքարի նման միջոցները պետք է դեն նետվեին լարվածության թուլացման ժամանակաշրջանում: Այժմ, երբ կապիտալիստական և սոցիալիստական պետությունների միջև ընդլայնվում են կուլտուրական կապերը, մարդկանց շփումները, ինֆորմացիայի փոխանակումը և այլն, գաղափարական պայքարը դուրս է գալիս զուտ տեսական վիճարկումների և պրոպագանդիստական գործունեության շրջանակներից և վերածվում հայացքների, կարծիքների, հոգևոր արժույթների, սոցիալիստական և կապիտալիստական ապրելակերպի ամենօրյա հակամարտության: «...Լարվածության թուլացման պայմաններում այդ կապերի և կոնտակտների զարգացումը միանգամայն բնականոն է, եթե խստիվ կիրառվեն սուվերենության, փոխադարձ հարգման և միմյանց ներքին գործերին չմիջամտելու սկզբունքները» (Լ. Ի. Բրեժնև, Ճառ ՍՄԿԿ Կենտկոմի պլենումում, «Հայաստան» հրատ., 1976 թ., էջ 44):

Քանի դեռ գոյություն ունի կապիտալիզմը, գաղափարախոսության բնագավառում կշարունակվի նաև հակոտնյա դասակարգերի գաղափարների հակամարտությունը, դասակարգային անհաշտ պայքարը: Նրանք, ովքեր կոմունիստներին մեղադրում են մարքսիզմ-լենինիզմի և պրոլետարական ինտերնացիոնալիզմի հավատարմության և լարվածության թուլացման սկսված պրոցեսը խանգարելու մեջ, չեն դադարում ու չեն հրաժարվում այսօր սոցիալիզմի դեմ գաղափարական պայքար մղելուց: Ուստի, լարվածության թուլացման պայմաններում երկու հակադիր գաղափարների պայքարը, որն ունի անհրաժեշտ և օբյեկտիվ բնույթ, չի կարող արգելակել ժամանակակից պատմական մոմենտի պահանջը՝ բոլոր խաղաղասեր ուժերի միավորումը՝ հանուն բոլոր երկրների, բոլոր ժողովուրդների խաղաղ զարգացման ապահովման: Դա այդպես է, որովհետև խաղաղության համար պայքարը չի հետապնդում այս կամ այն երկրի սոցիալ-քաղաքական և տնտեսական հարաբերությունների հեղափոխական վերափոխություններ: Այդ պայքարին մասնակցում են տարբեր դասակար-

գեր, սոցիալական խմբեր և քաղաքական հոսանքներ, որոնք ունեն տարբեր հայացքներ և դավանանքներ։ Այդ իմաստով խաղաղության համար պայքարն ունի համամարդկային բնույթ և համապատասխանում է բոլոր երկրների և բոլոր ժողովուրդների կենսական շահերին։ Իսկ դրանք ոչ թե հակասում, այլ համընկնում են սոցիալիզմի, միջազգային բանվոր դասակարգի շահերի հետ։ Հետևաբար, լարվածության թուլացման և խաղաղության համար մղվող պայքարը սերտորեն կապված է համաշխարհային ասպարեզում երկու հակադիր սիստեմներ ունեցող պետությունների դասակարգային պայքարի, ժողովուրդների ազգային ազատագրության, սոցիալիզմի համար մղվող պայքարի հետ։

Սոցիալիզմի դիրքերի ամրապնդումը, միջազգային ասպարեզում նրա հեղինակության բարձրացումը և ազդեցության ուժեղացումը, բոլոր հեղափոխական ուժերի համախմբումը և հակաիմպերիալիստական գործողությունների կոորդինացումը թույլ չեն տալիս իմպերիալիզմին իր ներքին հակասությունները լուծել միջազգային հարաբերությունների շիկացման և ռազմական օջախների ստեղծման միջոցով։ Այդ ամենը նպաստում է ազգային և համաշխարհային մասշտաբով իմպերիալիզմի դեմ դասակարգային պայքարի ուժգնացմանը, մերկացնում ռեակցիոն, միլիտարիստական և ագրեսիվ ուժերին, սահմանափակում իմպերիալիստական ռազմական ինտերվենցիայի հնարավորությունը, համախմբում համաշխարհային պատերազմի կանխման համար հանդես եկող հասարակական-քաղաքական լայն շրջաններին։

Սոցիալիստական երկրների հետ միասին ավելի ու ավելի սերտորեն են համախմբվում արդիականության հեղափոխական, առաջադեմ ու խաղաղասեր ուժերը։ «Նրանց հարաճուն ակտիվությունը,— նշվում է ՍՄԿԿ Կենտկոմի «Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 60-րդ տարեդարձի մասին» որոշման մեջ,— գործողությունների ամրապնդվող միասնությունը ուղղված են մի նպատակի՝ կանխել նոր համաշխարհային պատերազմի վտանգը, կայուն խաղաղություն ու պայծառ ապագա ապահովել համայն մարդկության համար»։

# ԱԶԳԸ ԵՎ ԿՐՈՆԸ

**Մ. Մ. ԳՐԻԳՈՐՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

*ՎԵՐՋԻՆ ԺԱՄԱՆԱԿՆԵՐՍ մեր գրականության մեջ լայնորեն քննարկվում է կրոնայինի և ազգայինի փոխադարձ կապը։ Դա հրատապ է դարձել այն առումով, որ ներկայումս այդ բնագավառում սկսել են երևան գալ ու գործել նոր երևույթներ, նոր օրինաչափություններ։*

## ԱՌԱՍՊԵԼԻ ԿՐԱԽԸ

Մեր ժողովուրդների կյանքում տեղի ունեցող խոր վերափոխիչ պրոցեսները պայմանավորում են մի երևույթ, որը պարզապես կարելի է կոչել առասպելի կրախ։ Այդպիսի, կարծես հավերժ խորհրդավոր առասպելներից մեկն այն պատկերացումն է, թե կրոնն ու ազգը պատմության անքակտելի ու անբաժանելի ֆենոմեններն են։ Այդ տեսակետն ամենից ավելի ցայտուն արտահայտել է հայտնի ռուս կրոնական մտածող Ն. Ա. Բերդյաևը։ «Ժողովուրդը, որպես ազգ,— գրել է նա,— հաստատվում է միայն կրոնապես» (Н. А. Бердяев. «Русские мыслители», А. С. Хомяков, М., 1912, стр. 212)։ Ազգը, ըստ Բերդյաևի, չի կարելի բաժանել, մաս-մաս անել ինչ-որ սոցիալական տարրերի՝ գյուղացիների, բանվորների և այլն։ Այդ մենք ենք «նատուրալիզացնում» ազգը, ապացուցում էր նա, այն հանգեցնում ինչ-որ մի «բնական» կամ «կենդանաբանական» սկզբունքի։ Ըստ Բերդյաևի, ազգը, որպես հոգևոր էություն, կարող է լինել միայն իր միաձուլվածությամբ, տարրալուծվելով կրոնում։ Ազգ չի կարող լինել առանց կրոնի։ Բերդյաևը ձգտում էր ազգը և կրոնը, ինչպես և դրանց փոխադարձ կապը վերածել հավիտենական և բնավ իրարից չտարրանջատվող երևույթների։

Մարքսիզմ-լենինիզմը խորապես բացահայտել է ազգի նկատմամբ կրոնաիդեալիստական նման հայացքների սնանկությունը և ազգի վերաբերմունքը կրոնի հանդեպ։ Կրոնը և ազգն ինչ-որ հրաշքով պատրաստի վիճակում երևան չեն եկել հասարակության մեջ, դրանք պատմության արգասիք են, ընդ որում, կրոնները՝ ավելի վաղ ու տևական պատմության, իսկ ազգը՝ հասարակության զարգացման ավելի ուշ շրջանի։ Բերդյաևը և բուրժուական մյուս գաղափարախոսները փութաջանորեն խուսափում են ազգը քննարկել դասակարգային տեսանկյունից. բայց չէ՞ որ ազգի կոնկրետ էությունը պայմանավորվում է այն բանով, թե սոցիալական ինչպիսի ուժերից է կազմված այն և ո՛ր դասակարգն է ղեկավարում նրան։ Կրոնը նույնպես չի կարելի դիտել վերացականորեն. ծագելով դեռևս անդասակարգ հասարակությունում, այն իր զարգացման ընթացքում սերտորեն առնչվել է տարբեր դասակարգերի հետ, գործիք դարձել նրանց, մասնավորապես տիրապետող դասակարգերի ձեռքում։

Ազգի ու կրոնի, նրանց փոխադարձ կապի մասին զանազան սխալ ուս-

մունքների դեմ մենք այժմ կարող ենք բերել ո՛չ միայն տեսական փաստարկներ։ Այդ ուսմունքների սնանկության մասին է վկայում հասարակության, մասնավորապես մեր երկրի զարգացման պատմական փորձը։ Հաղթանակած սոցիալիզմը ՍՍՀՄ-ում դրականորեն դրսևորեց կրոնի ու եկեղեցու կեղեքումից ձերբազատված հասարակության և ազգի հնարավորությունը։ Դրանով իսկ գործնականորեն ապացուցվեց, որ կրոնի ու ազգի միջև եղած կապը ո՛չ թե հավերժական երևույթ է, այլ որոշակի պայմանների, որպես կանոն՝ հասարակության զարգացման բուրժուական պայմանների հետևանք։

## ԱԶԳԻ ԵՎ ԿՐՈՆԻ ՊԱՏՄԱԿԱՆ ԿԱՊԸ

*Կրոնը միշտ էլ քարոզել ու քարոզում են մարդիկ։ Մարդկային միջավայրից դուրս կրոն չկա։ Նախնադարյան կրոններն անմիջականորեն «ազգային» բնույթ էին կրում այն իմաստով, որ յուրաքանչյուր տոհմ և ցեղ ունեցել է իր սեփական աստվածները, որոնք մարմնավորել են նրան շրջապատող իրականության երևույթները։ Բազմաստվածությունը կրոններին ու նրանց աստվածներին առավելագույն չափով մերձեցնում էր ժողովուրդների կենսագործունեության կոնկրետ առանձնահատկություններին, նրանց հավատալիքներն ու պաշտամունքային ծեսերը դարձնում չափազանց անհատական ու որոշակի։ Աստվածների միջոցով կարելի էր ճանաչել ժողովուրդներին, նրանց կենցաղը, աշխարհագրությունը և անգամ տնտեսակարգը։*

*Տարբեր են եղել երկրագործի և որսորդի, ձկնորսի ու այլ զբաղմունքների տեր մարդկանց կրոնական պաշտամունքի օբյեկտները։ Այդ աստվածներին Էնգելսը պայմանականորեն անվանում է «ազգային», քանի որ «նրանց իշխանությունը չէր անցնում իրենց պահպանած մարզի սահմանից, որի մյուս կողմում անբաժան կերպով կառավարում էին ուրիշ աստվածներ»* (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 21, стр. 313)։

*Ստրկատիրական հասարակարգի կրոնական ձևերում արտացոլվում են իրականության արդեն ավելի բարդ երևույթները։ Հետզհետե շարունակվում է երկրից կրոնի հեռացման պրոցեսը։ Եվ այդ ամենով հանդերձ, այն լիովին չի լքում իր առանձնահատուկ «ազգային» հողը։ Բազմազան աստվածների առկայությունը հին Հունաստանում, նրանց էությունն ու վարքը չի կարելի պատկերացնել առանց այն ժամանակի հունական հասարակության առանձնահատկությունների, առանց այն ժամանակի հույների «ազգային» դեմքի։*

*Դեռևս ստրկատիրական հասարակարգի ընդերքում ծագում են, այսպես կոչված, համաշխարհային կրոնները։ Կրոնն այստեղ ևս հավատարիմ է մնում իրեն՝ իբրև պատրանքային աշխարհընկալում, դիմելով գլխավորապես մարդկային այնպիսի վերացական հատկությունների, ինչպիսիք են՝ սերը, երջանկությունը, ուրախությունը, կարեկցանքը և այլն, այն յուրովի է մեկնաբանում դրանք, ռեալ մարդկային էությունը խեղաթյուրելով և սրբագործելով գերբնական, աստվածային լույսով։ Դեռևս մինչմարքսյան աթեիստներն իրավամբ ընդգծում էին, որ միասնական աստվածության հասկացությունը մարդկանց մեջ կարող էր ծագել մարդկային հասարակության մեջ միասնական կառավարչի, այսինքն՝ թագավորի, կայսրի, ցարի և այլոց երևան գալուն զուգընթաց։*

*Ծագելով որոշակի պայմաններում և կոնկրետ ժողովուրդների շրջանում, այդ կրոնները տարբեր ուղիներով թափանցում են աշխարհի մյուս երկրները։ Իսլամի ազդեցության շրջանակը, օրինակ, ձգվում է Մարոկկոյից մինչև Ինդոնեզիա և Ֆիլիպիններ, իսկ աշխարհի բոլոր մայրցամաքներում միլիոնավոր զանգվածներ դավանում են քրիստոնեությունը։ Իրենց շահերից ելնելով, կրոնի այդ ձևերը ձգտում են «ճանապարհ» գտնել դեպի հպատակեցված ժողովուրդների միտքն ու սիրտը։ Դրանք աստիճանաբար, իսկ երբեմն նաև դաժան ու բռնի միջոցներով, արմատավորվում են ժողովուրդների կենցաղում, սովորույթներում ու ավանդույթներում, նրանց հոգեբանության ու գաղափարախոսության մեջ, տվյալ հանգամանքներում դառնում նրանց կենսագործունեության*



*անխուսափելի տարրերը։ Միջին դարերում Եվրոպայում, արաբական երկրներում, Անդրկովկասում և այլուր ժողովուրդներն ստեղծում ու զարգացնում էին իրենց ազգային կուլտուրան՝ գիտությունը, փիլիսոփայությունը, արվեստն ու գրականությունը կրոնի ամենաուժեղ ազդեցության ներքո, նրա ուղղակի թելադրանքի պայմաններում։*

*Հայտնի է, որ միջնադարյան հայ մանրանկարները, որոնք աչքի են ընկնում գեղարվեստական բարձր մակարդակով, ստեղծվել են որպես կրոնական ձեռագրերի, աստվածաշնչի ու ավետարանների նկարազարդումներ ու բացատրություններ։ Այդ մանրանկարներն այստեղ, ինչպես և այլուր նման դեպքերում կատարում էին որոշակի պաշտամունքային դեր, այլ կերպ ասած՝ դրանք չի կարելի հասկանալ առանց այդ կրոնական երկերի բովանդակության։ Սակայն կարծես պատրանքային այդ հողի վրա հայերի մոտ ստեղծվում և նշանակալի զարգացման է հասնում արվեստի այդ հիանալի տեսակը։*

*Բացի դրանից, հայ նկարիչներն իրենց նկարներում պատկերում էին ո՛չ միայն մտացածին կրոնական աշխարհի տարբեր պատկերներ, այլև իրականության զանազան երևույթներ ու առարկաներ՝ բույսեր, կենդանիներ, մարդկային կերպարանքներ, դիմանկարներ, կահույք, երաժշտական գործիքներ, գրենական պիտույքներ և այլն։ Ու թեև դրանք ոճավորվում և ենթարկվում են կրոնական մտահղացմանը, այնուամենայնիվ ստեղծում են իրենց կերտողների ապրած միջավայրի բավական որոշակի պատկերը։*

*Կրոնական գեղանկարչությունը, որտեղ էլ այն ծագած լինի, չէր կարող բացարձակապես կտրվել կյանքից։ Ռուսաստանում Անդրեյ Ռուբլյովն ստեղծել է մի ամբողջ շարք հրեշտակների կերպարներ, որոնցում մարմնավորել է մարդկային բազմապիսի զգացմունքներն ու ապրումները։*

*Որքան էլ եկեղեցականներն իրենց «սոցիալական պատվերը» պարտադրեին վրձնի վարպետներին, չէին կարող նույնպիսի հեշտությամբ նրանց գեղարվեստական տաղանդ պարգևել։ Դա արդեն նրանցից կախված չէր։ Բայց փոխարենը դրանով էր պայմանավորված այն, թե ինչպես երևակայական կրոնական իդեալը մարմնավորել կոնկրետ կերպարի մեջ, ինչպես այն դարձնել տեսանելի ու շոշափելի, ինչպես դրանից ստեղծել գեղագիտական ստեղծագործություն։ Այդ նկարիչներն օբյեկտիվորեն դառնում էին իրենց դարաշրջանի «աչքն» ու «ականջը», կրոնական թեմատիկայի միջոցով ժամանակակիցների զգացմունքների ու տրամադրությունների արտահայտիչը։ Լ. Ա. Դուռնովան Հայաստանի այն ժամանակի միասնական ազգային արվեստի մեջ, որը հանդես էր գալիս կրոնական զգեստի ներքո, առանձնացնում է երկու դպրոց, որոնք պարզորոշ արտացոլում են երկու դասակարգերի՝ մի կողմից՝ աշխարհիկ ու հոգևոր վերնախավի և, մյուս կողմից՝ դեմոկրատական ժողովրդական խավերի աշխարհազգացումը։*

*Երբ Արևմուտքում տնտեսական, քաղաքական և այլ ռեալ պայմաններ էին ստեղծվում ժամանակակից իմաստով ազգերի կազմավորման համար, կրոնն ուղեկցում և յուրովի արձագանքում էր այդ պրոցեսին։ Այն իրենով էր երանգավորում բուրժուական բոլոր հեղափոխությունները, որոնք այս կամ այն կերպ լուծում էին ազգային պրոբլեմներ։ Բուրժուազիան Եվրոպայի մի քանի երկրներում օգտագործում էր «ազգային եկեղեցու» լոզունգը, որպեսզի ազատվի հռոմեական եկեղեցու տիրապետությունից և կրոնն ու եկեղեցին ենթարկի իր իշխանությանը, որն, իբր, նույնական է ամբողջ ազգի իշխանության հետ։ Ռեֆորմացիան, ըստ էության, որպես բուրժուական գաղափարական գործոն, որոշակի ազդեցություն էր ունենում Արևմուտքում ազգերի ձևավորման վրա։*

*Իհարկե, էականն այստեղ կրոնը չէ, քանի որ կրոնն ինքնին ոչինչ չէր կարող լուծել։ Այն ազգեր չի ստեղծել, ինչպես փորձում են ապացուցել աստվածաբանները։ Իսկական պատճառը սոցիալ-տնտեսական և դասակարգային այն տեղաշարժերն էին, որ տվյալ ժամանակի հասարակության մեջ կատարվում էին այդ ոլորտում։ Կրոնը լոկ յուրահատուկ ձևով էր ներկայացնում այդ իրադարձությունները։*

*Բուրժուական դարաշրջանում կրոնի ու ազգի միջև եղած կապը պատահա-*

կան չէ: Անկասկած է, որ բուրժուական զարգացման օբյեկտիվ պրոցեսը հանգեցնում էր հասարակության աշխարհականացմանը, գիտությունը, փիլիսոփայությունը, գրականությունը, արվեստը և այլն ազատելով եկեղեցու ուղղակի միջամտությունից, պայմաններ ստեղծելով ազգային կուլտուրայի զարգացման համար ոչ թե կրոնական, այլ աշխարհիկ հողի վրա: Կրոնը, որ ֆեոդալիզմի ժամանակաշրջանում «տեր» էր, բուրժուական հասարակարգում դարձավ կապիտալի «սպասավորը»:

Այդ ամենով հանդերձ, բուրժուական հասարակարգը, ստեղծելով մարդու կողմից մարդու շահագործման նոր ձև, չէր կարող վերացնել կրոնի սոցիալական արմատները: Բացի դրանից, անցնելով իշխանության գլուխ, բուրժուազիան արագ գիտակցեց կրոնի նշանակությունը՝ որպես մասսաների գիտակցությունը թմրեցնելու միջոցի: Կրոնի, իբրև ընդհանուր դիմակի, օգնությամբ նա կարող էր թաքցնել ազգի ներքին դասակարգային պառակտումը, իր շահերի օգտին գործող հասարակության օրենքները ներկայացնելով իբրև համազգային օրենքներ, հավերժացնել դրանք՝ արտաբերելով աստվածային կամքից:

Կրոնն ու ազգը բուրժուական կարգի պայմաններում իրար հետ կապված են ո՛չ միայն օբյեկտիվ տնտեսական հանգամանքների շնորհիվ: Այդ կապի մեջ մեծ դեր են խաղում նաև սուբյեկտիվ գործոնները, բուրժուական պետության քաղաքականությունը, կրթության ու լուսավորության սիստեմը, ինֆորմացիայի միջոցները, մամուլը և այլն, որոնք շարունակ պահպանում են կրոնական խավարամոլությունը ժողովրդի շրջանում և անդադար արմատավորում այն ազգային միջավայրում: Բուրժուազիայի համար ձեռնտու է ունենալ «աստվածավախ» ազգ. այդ դեպքում նա կարող է ավելի «խելոք» մնալ տանը և ավելի լավ կռվել դրսում, հանուն հենց նրա շահերի:

Կրոնը կարող է արտահայտել մարդկանց ազգային պատկանելիությունը: Պատմական որոշ շրջաններում կարելի է ասել՝ լիտվացին կաթոլիկ է, ռուսը՝ ուղղափառ, ուզբեկը՝ մուսուլման: Բայց որոշակի ժամանակի, որոշ պայմանների, տվյալ հանգամանքների սահմաններում: Չի կարելի այդ կապը հասկանալ բացարձակորեն, մետաֆիզիկորեն, ո՛չ միայն նրա համար, որ կրոնականի ու ազգայինի նշված զուգակցումը մի ինչ-որ ժամանակ չի եղել և կգա ժամանակ, երբ այն չի լինի: Ռուսը ոչ միշտ է ուղղափառ եղել և, ինչպես ցույց է տալիս մեր երկրի պատմական փորձը, միշտ չի մնա ուղղափառ: Նույնը կարելի է ասել վրացիների, հայերի, ուզբեկների և ուրիշ ազգերի մասին: Նույնիսկ այն ժամանակաշրջաններում, երբ կրոնի տվյալ ձևը տիրապետում է այս կամ այն ժողովրդին, այդ տիրապետությունը լրիվ, անբաժան ու անպայման չէ: Կրոնի հետ միասին ամեն մի ազգի մեջ միշտ եղել են նաև հակակրոնականության տարրեր: Ճիշտ չէ, որ իբր թե միայն կրոնն է ի վիճակի արտահայտելու ազգի ոգին: Դժվար է ասել, օրինակ, թե ո՛վ է ավելի շատ ու ավելի հարազատորեն արտահայտել ֆրանսիական ոգու բնույթը՝ կաթոլիկական եկեղեցի՞ն, թե՞ նրա այնպիսի հակառակորդներ, ինչպիսիք են Վոլտերը և Հոլբախը. Նույնը ռուս ժողովրդի մասին՝ ուղղափառությո՞ւնը, թե՞ Չերնիշևսկին և Պիսարևը: Հետևաբար, կրոնի և ազգի կապը երբեք համապարփակ ու լրիվ չի եղել: Յուրաքանչյուր ազգի մեջ գոյություն են ունեցել և՛ կրոնականության (նախորդ ֆորմացիաներում այն գերակշռել է), և՛ աթեիզմի տարրեր, և պայքարը դրանց միջև ընթացակցել է բոլոր ժողովուրդների պատմությանը:

Որքան ավելի շատ է այս կամ այն ժողովուրդը կամ ժողովրդի մի մասն ապրում իր ավանդական ազգային պայմաններից դուրս (մասնավորապես տերիտորիալ միասնության ու կոմպակտության բացակայության պայմաններում), այնքան ավելի շատ հնարավորություններ են ստեղծվում, որ ինքնին երկրորդական որևէ գործոն, ամենից հաճախ՝ կրոնը, ձեռք բերի կոմպենսատորի ֆունկցիա և հանդես գա իբրև ազգային ֆենոմեն, նրա արժեքների ու ամբողջականության գլխավոր կրող: Նման պարագաներում կրոնի ուժն այն է, որ սա պահպանում է իր մեջ և փորձում է յուրովի իրականացնել մարդու պահանջմունքները, մասնավորապես նրա սերը հայրենիքի, մայրենի լեզվի, կուլտուրայի հանդեպ, ուժեղացնելով իր ազդեցությունը մարդկանց վրա:



## ԱԶԳԸ ԵՎ ԿՐՈՆԸ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՊԱՅՄԱՆՆԵՐՈՒՄ

Սովետական պետության առաջին ակտերն իսկ լուծեցին մի ամբողջ կոմլեքս արմատական հարցեր, այդ թվում և՝ կրոնական: Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունից անմիջապես հետո վերացվեցին ազգային և ազգային-կրոնական բոլոր արտոնություններն ու սահմանափակումները: Հատուկ դեկրետով եկեղեցին անջատվեց պետությունից, դպրոցը՝ եկեղեցուց. կրոնը հռչակվեց քաղաքացիների մասնավոր գործ: Կոմունիստական կուսակցության և սովետական պետության այդ և մյուս միջոցառումները սկզբնավորեցին մի հիմնական օրինաչափություն— ազգերի և կրոնի խզում, անջատում: Մեր պայմաններում դրանց առջև բացվեցին միանգամայն տարբեր ուղիներ ու հեռանկարներ: Դրանցից մեկը՝ ազգը, սոցիալիզմի պայմաններում և սոցիալիզմի բազայի վրա բարգավաճում է, մյուսը՝ կրոնը, նույն այդ պայմաններում՝ աստիճանաբար մարում և արտամղվում է հասարակական ու անձնական կյանքից: Մեր երկրի պատմական փորձը ցույց տվեց, թե որքան սխալ է այն մտայնությունը, երբ կրոնը համարում են ազգային ոգու մշտական ու անխուսափելի ուղեկից:

Մի քանի կոնկրետ փաստերով ցույց տանք, թե սովետական պայմաններում ինչպես «խախտվեց» կրոնայինի ու ազգայինի՝ անցյալ ժամանակների համար սովորական փոխադարձ կապը:

Հայտնի է, որ մեր երկրի մի շարք ժողովուրդներ որպես ազգ ձևավորվեցին սովետական իշխանության օրոք: Նրանցից են նաև ղազախները, որոնք հիմնականում վարել են վաչկատունների կյանք: Բառիս բուն իմաստով ազգ դառնալու համար անհրաժեշտ էր վերացնել ֆեոդալական-նահապետական կարգի այդ վերապրուկը: Ոչ ուղտերի քարավանների, ոչ այս ու այնտեղ հիմնվող ժամանակավոր յուրդերի միջոցով հնարավոր չէր ստեղծել ժամանակակից էկոնոմիկա, կուլտուրա, քիչ թե շատ տանելի քաղաքակրթություն: Ընդ որում, պատմությունն այստեղ սերտորեն միահյուսել է երկու պրոցես՝ սոցիալիզմի կառուցումը և ազգի համախմբումը: Առաջին խնդրի իրականացման համար անհրաժեշտ էր նստակեցություն և կայուն բանվորական ձեռքերի համակենտրոնացում որոշակի վայրերում ու մեծ մասշտաբներով, առանց որի անհնար են խոշոր արդյունաբերության՝ արդի հասարակության հիմքի ստեղծումն ու զարգացումը: Միաժամանակ այդ նշանակում էր ղազախների ցեղային ու տոհմային մեկուսացվածության ու ցրվածության վերացում, որը հանգեցնում էր նրանց միջև տնտեսական կայուն կապերի հաստատման և միավորման՝ մեկ ազգային ամբողջության մեջ: Իրականում այդ նույնիսկ փոխադարձաբար կապված երկկողմանի մի պրոցես է՝ նոր սոցիալիստական հասարակության կազմավորում և դրա ներսում՝ նոր սոցիալիստական ազգերի ձևավորում: Սոցիալիզմն այն հիմքն է, որը ձևավորում և սահմանում է այդ պրոցեսի բոլոր երևույթների բնույթը, այդ թվում և իրավամբ սոցիալիստական կոչվող մեր ազգերի ձևավորումը:

ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, Ղազախստանի կոմկուսակցության Կենտկոմի առաջին քարտուղար Դ. Ա. Կունաևը, խոսելով ղազախ ժողովրդի կյանքում տեղի ունեցած այդ փոփոխությունների մասին, դիպուկ ու պատկերավոր կերպով բնութագրում է դրանք որպես որակական թռիչք, որպես մի ցատկ մի ֆորմացիայից մյուսը, չափազանց պրիմիտիվ ապրելակերպից մինչև արդի սոցիալիստականը, արորից մինչև տրակտորը և էլեկտրոնային-հաշվիչ մեքենան, ծխոտ յուրդերի փոքրիկ աուլներից մինչև սոցիալիստական գեղեցիկ քաղաքները՝ արդյունաբերական հսկաներով, քարավանների նեղ կածաններից մինչև ժամանակակից ավտոստրադաներն ու օդային լայներները և այլն, և այլն:

Սովետական պայմաններում մեր երկրի շատ ժողովուրդներ առաջին անգամ ունեցան համազգային գրական լեզու: Այժմ նրանք ունեն ո՛չ միայն իրենց գիրը, այլև մեր երկրում լայնորեն հայտնի գրողներ, ուսուցիչներ ու գիտնականներ, դպրոցներ, համալսարաններ ու գիտությունների ակադեմիաներ,

կոնսերվատորիաներ, օպերային ու դրամատիկական թատրոններ, հոգևոր արժույթների այլ օջախներ: Այդ ամենն այժմ մատչելի է ժողովրդին, դարձել է նրա միսն ու արյունը, կուլտուրապես միավորել ու միաձուլել նրան, ձևավորել նրա ազգային՝ իր էությամբ սովետական և սոցիալիստական դեմքը:

Վիթխարի փոփոխություններ են տեղի ունեցել նաև մեր մյուս ժողովուրդների, սովետական փոքր ու մեծ բոլոր ժողովուրդների, հին ու նոր ազգերի կյանքում: Իբրև ապացույց կարելի է վկայակոչել բազում փաստեր ու թվեր: Բայց դրանք մեզ համար այժմ սովորական են դարձել: Գիտենք, որ այդ փաստերն ու թվերը, այդ «տվյալ» քանակությունը վերջնագիծ չեն, դրանք անընդհատ կփոխարինվեն նորերով: Եվ որքան էլ նշանակալի, դրանք լոկ քայլերն են մեր առաջընթացի: Այդ ճանապարհին «քանակը» դիալեկտիկորեն փոխվում է նոր «որակի», փաստերի ու թվերի սրընթաց հեղեղի մեջ միշտ էլ ինչ-որ բան մնում է, ամրապնդվում, տարեցտարի ուժեղանում, դառնում ավելի վառ, ավելի որոշակի, ծանրակշիռ ու ակնբախ: Սոցիալիստական ապրելակերպն է այդ, սովետական մարդկանց բարոյական ու մտավոր դեմքը: Որտեղ էլ ապրեն ու աշխատեն սովետական քաղաքացիները՝ Կարագանդայում թե Բաքվում , Քիշինևում թե Ֆրունզեում, մեր լայնածավալ հայրենիքում ամենուրեք նրանք հավատարիմ են նոր կյանքի սկզբունքներին, մեծ Հոկտեմբերի գաղափարներին:

Արարելու և ստեղծագործելու առաքելությունը կրոնը մշտապես վերագրում է աստծուն: Բայց չէ՞ որ մեր հասարակության նյութական ու հոգևոր կյանքի այս վիթխարի, հիրավի, համաշխարհային-պատմական փոփոխությունները սովետական մարդիկ կատարեցին առանց աստծու «օգնության», առանց որևէ կրոնի միջամտության: Ավելին. այդ պրոցեսները մեզ մոտ տեղի են ունեցել և ունենում հակառակ կրոնի ուսմունքի: Կրոնը եղել է և մնում է այդ առաջընթացի խոչընդոտը, քանի որ այն մթագնում է մարդկանց գիտակցությունը կեղծ պատրանքներով և, չնայած իր խոստումներին, ոչ թե հարստացնում, այլ արժեզրկում է կյանքի իմաստը, այն դարձնելով վերացական մի անիրականանալի իդեալ:

Նոր կյանքի կառուցման, ակտիվ պրակտիկ գործունեության ընթացքում սովետական մարդն ազատվում էր կրոնական կողմնորոշումից: Դա մի դպրոց էր, որը լուսավորում էր նրանց միտքը և դաստիարակում՝ որպես մարդկային ճակատագրի իսկական կերտողներ: Սկսվեց մասսայական հեռացումը կրոնից: Մեր բազմազգ ու բազմակրոն երկրում սոցիալիզմն ստեղծեց մի հասարակություն, որտեղ ժողովուրդները մտածում, գործում, ապրում ու ստեղծագործում են՝ ղեկավարվելով ոչ թե «ի վերուստ տրված» երկնային խրատներով, այլ իրենց իսկ ստեղծած աթեիստական նորմերով ու սկզբունքներով:

Դուրս մղվելով սովետական հասարակության սոցիալ-քաղաքական կյանքի ոլորտներից, կրոնը կերպարանափոխվում է, շարունակելով հարատևել գլխավորապես մարդու ներքին աշխարհում, դրսևորվելով ամենից հաճախ մարդկանց հոգեբանության, ապրումների ու տրամադրությունների մեջ, կառչելով ժողովուրդների կենցաղին ու սովորույթներին, ապաստանելով ազգային ավանդույթներում: Հարկ է նկատի ունենալ նաև, որ գիտակցությունն ընդհանրապես, ինչպես և ազգային արդի գիտակցությունը, անցյալից ժառանգում է դրական կամ բացասական որոշակի հոգևոր արժույթներ, ինչպես և կրոնական նախապաշարմունքներ: Բնականաբար, պայքար է առաջանում հնի ու նորի, առաջավորի ու հետադիմականի միջև: Կրոնը հասարակական գաղափարախոսության առավել կենսունակ ձևերից է: Մեր հասարակության մեջ նրա ազդեցության թուլացումը չի խանգարում, որ այն ակտիվ պայքարի իր գոյության համար, փնտրի նոր կապեր ու նոր տեղ մեր զարգացման՝ արմատականապես փոփոխված պայմաններում: Սա է նրա մոդեռնացման ու հարմարվողականության էությունը: Կրոնի վերջնական ու լրիվ հաղթահարումը պատմական ու տևական պրոցես է: Սոցիալիզմն արագացնում է այդ պրոցեսը գիտա-մատերիալիստական աշխարհայացքի արմատավորման, գաղափարական պլանաչափ ու սիստեմատիկ աշխատանքի միջոցով:

Անցյալում տարբեր ճակատագրեր ունեցած ժողովուրդների, բազմազգ ու



բազմակրոն մեր երկրի աթեիստական հասարակարգի ստեղծման բարդ ու բազմազան ուղիով ընթանալու օրինակ է: Մեր ողջ երկրում, կոմունիզմի կառուցման ընթացքում ավելի ու ավելի են ինտենսիվանում աշխարհականացման պրոցեսները, թուլանում է ժողովրդի ու կրոնի կապը: Սա է սովետական հասարակության զարգացման հիմնական օրինաչափություններից մեկը:

## ԱԶԳԻ ՈՒ ԿՐՈՆԻ ՄԻ ԱՌՆՉՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ ԵՎՍ

Ազգայինի ու կրոնայինի կապը կոնկրետ հանգամանքներում կարող է վերաճել ազգայնականի ու կրոնականի: Սրանք միանգամայն տարբեր բաներ են և երբեք չի կարելի շփոթել:

Ամեն մի կրոնական ազգային է, այլ կերպ ասած՝ նա պատկանում է որոշակի ազգի, ռուս է, բելոռուս կամ տաջիկ և այլն: Արդի պայմաններում չկա ապազգային անհատ: Չի կարելի այդպես մտածել, երբ խոսքը ազգայնականի մասին է: Կրոնականն անպայման ազգային է, բայց անպայման ազգայնական չէ: Եթե այդպես լիներ, ապա հեշտությամբ կարելի էր բոլոր հավատացյալներին դասել նացիոնալիստների շարքը: Դրանից ավելի անհեթեթ, սխալ ու վնասակար բան լինել չի կարող: Նացիոնալիզմը բուրժուական գաղափարախոսություն է ու քաղաքականություն: Դեռևս կրոնի ազդեցության տակ գտնվող այս կամ այն մարդը միայն դրա հետևանքով ինքնաբերաբար նացիոնալիստ չի դառնում: Ավելին. չնչին բացառությամբ, ժողովուրդների հիմնական զանգվածին խորթ է այդ, հատկապես մեր երկրում, ուր վերացել են շահագործող դասակարգերը, և մարքսիզմ-լենինիզմի ինտերնացիոնալ աշխարհայացքը դարձել է սովետական մարդկանց սեփականությունը:

Բայց այդ չի նշանակում, թե մեզ մոտ բացառված է որոշ պայմաններում կրոնի և բուրժուական նացիոնալիզմի մնացուկների շաղկապման հնարավորությունը: Ամենևին: Բուրժուական նացիոնալիզմի համար ձեռնտու և հարմար է այս կամ այն տեղում որոշակի կապ հաստատել հավատացյալների միջավայրի հետ և հանդես գալ կրոնական հանդերձանքով. դա նրան հնարավորություն է ընձեռում երկրում լեգալ կերպով գործող եկեղեցին ծառայեցնել իր շահերին, ներգործելու համար կրոնական տրամադրությամբ համակված մարդկանց վրա:

Սակայն միաժամանակ չի կարելի մոռանալ, որ նացիոնալիստական գաղափարների ու զգացմունքների արտահայտիչ կարող են լինել կրոնից հեռու կանգնած, եկեղեցի չհաճախող, կրոնական ծեսերը չպահպանող մարդիկ և: Մտավորականության խավերի, պարզապես լուսավորված ու կրթված մարդիկ կարող են լինել նրանք. աշխարհականացած նացիոնալիստներ, որոնք իրենց հայացքները հիմնավորում են ոչ թե ուղղակի կրոնական, այլ ուրիշ, երբեմն նաև «գիտական» փաստարկներով: Նացիոնալիզմի «ժամանակակից» ավելի նրբին տեսակն է այդ: Պատմության մեջ նացիոնալիզմը և շովինիզմը հայտնի են անգամ որոշ աթեիստական քողավորմամբ (օրինակ՝ Նիցշեն):

Այսպիսով, այստեղ կարող են լինել ամենատարբեր զուգադրումներ: Այդ առանձին հարց է: Տվյալ դեպքում կարևոր է շեշտել, որ կրոնականի ու ազգայինի կապը նույնը չէ, ինչ կրոնայինի ու նացիոնալիստականի կապը: Անհրաժեշտ է խստորեն տարբերել հավատացյալ, կրոնական մարդուն (որը միշտ ազգային է ու չի կարող այդպիսին չլինել) համոզված նացիոնալիստից: Արդի պայմաններում չենք կարող ազգային չլինել, բայց կարող ենք և պետք է լինենք ո՛չ թե ազգայնականներ, այլ ինտերնացիոնալիստներ: Նացիոնալիզմը հաղթահարելի է արդի պայմաններում, ազգայինը հաղթահարվում է պատմության երկարատև զարգացման պրոցեսում, կոմունիզմի կառուցման և ամբողջ աշխարհում նրա հաղթանակի ընթացքում:

Մենք պետք է կոնկրետ ու ներգործուն պայքար մղենք անցյալի տարբեր վերապրուկների դեմ, որոնցից են կրոնական պատկերացումներն ու նացիոնալիզմի մնացուկները: Դրանք կարող են հանդես գալ համատեղ և առանձին-առանձին, բայց չի կարելի շփոթել դրանց դեմ մղվող պայքարի մեթոդներն ու

կոնսերվատորիաներ, օպերային ու դրամատիկական թատրոններ, հոգևոր արժույթների այլ օջախներ։ Այդ ամենն այժմ մատչելի է ժողովրդին, դարձել է նրա միսն ու արյունը, կուլտուրապես միավորել ու միաձուլել նրան, ձևավորել նրա ազգային՝ իր էությամբ սովետական և սոցիալիստական դեմքը։

Վիթխարի փոփոխություններ են տեղի ունեցել նաև մեր մյուս ժողովուրդների, սովետական փոքր ու մեծ բոլոր ժողովուրդների, հին ու նոր ազգերի կյանքում։ Իբրև ապացույց կարելի է վկայակոչել բազում փաստեր ու թվեր։ Բայց դրանք մեզ համար այժմ սովորական են դարձել։ Գիտենք, որ այդ փաստերն ու թվերը, այդ «տվյալ» քանակությունը վերջնագիծ չեն, դրանք անընդհատ կփոխարինվեն նորերով։ Եվ որքան էլ նշանակալի, դրանք լոկ քայլերն են մեր առաջընթացի։ Այդ ճանապարհին «քանակը» դիալեկտիկորեն փոխվում է նոր «որակի», փաստերի ու թվերի սրընթաց հեղեղի մեջ միշտ էլ ինչ-որ բան մնում է, ամրապնդվում, տարեցտարի ուժեղանում, դառնում ավելի վառ, ավելի որոշակի, ծանրակշիռ ու ակնբախ։ Սոցիալիստական ապրելակերպն է այդ, սովետական մարդկանց բարոյական ու մտավոր դեմքը։ Որտեղ էլ ապրեն ու աշխատեն սովետական քաղաքացիները՝ Կարագանդայում թե Բաքվում , Քիշինևում թե Ֆրունզեում, մեր լայնածավալ հայրենիքում ամենուրեք նրանք հավատարիմ են նոր կյանքի սկզբունքներին, մեծ Հոկտեմբերի գաղափարներին։

Արարելու և ստեղծագործելու առաքելությունը կրոնը մշտապես վերագրում է աստծուն։ Բայց չէ՞ որ մեր հասարակության նյութական ու հոգևոր կյանքի այս վիթխարի, հիրավի, համաշխարհային-պատմական փոփոխությունները սովետական մարդիկ կատարեցին առանց աստծու «օգնության», առանց որևէ կրոնի միջամտության։ Ավելին. այդ պրոցեսները մեզ մոտ տեղի են ունեցել և ունենում հակառակ կրոնի ուսմունքի։ Կրոնը եղել է և մնում է այդ առաջընթացի խոչընդոտը, քանի որ այն մթագնում է մարդկանց գիտակցությունը կեղծ պատրանքներով և, չնայած իր խոստումներին, ոչ թե հարստացնում, այլ արժեզրկում է կյանքի իմաստը, այն դարձնելով վերացական մի անիրականանալի իդեալ։

Նոր կյանքի կառուցման, ակտիվ պրակտիկ գործունեության ընթացքում սովետական մարդն ազատվում էր կրոնական կողմնորոշումից։ Դա մի դպրոց էր, որը լուսավորում էր նրանց միտքը և դաստիարակում՝ որպես մարդկային ճակատագրի իսկական կերտողներ։ Սկսվեց մասսայական հեռացումը կրոնից։ Մեր բազմազգ ու բազմակրոն երկրում սոցիալիզմն ստեղծեց մի հասարակություն, որտեղ ժողովուրդները մտածում, գործում, ապրում ու ստեղծագործում են՝ ղեկավարվելով ոչ թե «ի վերուստ տրված» երկնային խրատներով, այլ իրենց իսկ ստեղծած աթեիստական նորմերով ու սկզբունքներով։

Դուրս մղվելով սովետական հասարակության սոցիալ-քաղաքական կյանքի ոլորտներից, կրոնը կերպարանափոխվում է, շարունակելով հարատևել գլխավորապես մարդու ինտիմ աշխարհում, դրսևորվելով ամենից հաճախ մարդկանց հոգեբանության, ապրումների ու տրամադրությունների մեջ, կառչելով ժողովուրդների կենցաղին ու սովորույթներին, ապաստանելով ազգային ավանդույթներում։ Հարկ է նկատի ունենալ նաև, որ գիտակցությունն ընդհանրապես, ինչպես և ազգային արդի գիտակցությունը, անցյալից ժառանգում է դրական կամ բացասական որոշակի հոգևոր արժույթներ, ինչպես և կրոնական նախապաշարմունքներ։ Բնականաբար, պայքար է առաջանում հնի ու նորի, առաջավորի ու հետադիմականի միջև։ Կրոնը հասարակական գաղափարախոսության առավել կենսունակ ձևերից է։ Մեր հասարակության մեջ նրա ազդեցության թուլացումը չի խանգարում, որ այն ակտիվ պայքարի իր գոյության համար, փնտրի նոր կապեր ու նոր տեղ մեր զարգացման՝ արմատականապես փոփոխված պայմաններում։ Սա է նրա մոդեռնացման ու հարմարվողականության էությունը։ Կրոնի վերջնական ու լրիվ հաղթահարումը պատմական ու տևական պրոցես է։ Սոցիալիզմն արագացնում է այդ պրոցեսը գիտա-մատերիալիստական աշխարհայացքի արմատավորման, գաղափարական պլանաչափ ու սիստեմատիկ աշխատանքի միջոցով։

Անցյալում տարբեր ճակատագրեր ունեցած ժողովուրդների, բազմազգ ու



բազմակրոն մեր երկրի աթեիստական հասարակարգի ստեղծման բարդ ու բազմաղան ուղիով ընթանալու օրինակ է։ Մեր ողջ երկրում, կոմունիզմի կառուցման ընթացքում ավելի ու ավելի են ինտենսիվանում աշխարհականացման պրոցեսները, թուլանում է ժողովրդի ու կրոնի կապը։ Սա է սովետական հասարակության զարգացման հիմնական օրինաչափություններից մեկը։

## ԱԶԳԻ ՈՒ ԿՐՈՆԻ ՄԻ ԱՌՆՉՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ ԵՎՍ

Ազգայինի ու կրոնայինի կապը կոնկրետ հանգամանքներում կարող է վերաճել ազգայնականի ու կրոնականի։ Սրանք միանգամայն տարբեր բաներ են և երբեք չի կարելի շփոթել։

Ամեն մի կրոնական ազգային է, այլ կերպ ասած՝ նա պատկանում է որոշակի ազգի, ռուս է, բելոռուս կամ տաջիկ և այլն։ Արդի պայմաններում չկա ապազգային անհատ։ Չի կարելի այդպես մտածել, երբ խոսքը ազգայնականի մասին է։ Կրոնականն անպայման ազգային է, բայց անպայման ազգայնական չէ։ Եթե այդպես լիներ, ապա հեշտությամբ կարելի էր բոլոր հավատացյալներին դասել նացիոնալիստների շարքը։ Դրանից ավելի անհեթեթ, սխալ ու վնասակար բան լինել չի կարող։ Նացիոնալիզմը բուրժուական գաղափարախոսություն է ու քաղաքականություն։ Դեռևս կրոնի ազդեցության տակ գտնվող այս կամ այն մարդը միայն դրա հետևանքով ինքնաբերաբար նացիոնալիստ չի դառնում։ Ավելին. չնչին բացառությամբ, ժողովուրդների հիմնական զանգվածին խորթ է այդ, հատկապես մեր երկրում, ուր վերացել են շահագործող դասակարգերը, և մարքսիզմ-լենինիզմի ինտերնացիոնալ աշխարհայացքը դարձել է սովետական մարդկանց սեփականությունը։

Բայց այդ չի նշանակում, թե մեզ մոտ բացառված է որոշ պայմաններում կրոնի և բուրժուական նացիոնալիզմի մնացուկների շաղկապման հնարավորությունը։ Ամենևին։ Բուրժուական նացիոնալիզմի համար ձեռնտու և հարմար է այս կամ այն տեղում որոշակի կապ հաստատել հավատացյալների միջավայրի հետ և հանդես գալ կրոնական հանդերձանքով. դա նրան հնարավորություն է ընձեռում երկրում լեգալ կերպով գործող եկեղեցին ծառայեցնել իր շահերին, ներգործելու համար կրոնական տրամադրությամբ համակված մարդկանց վրա։

Սակայն միաժամանակ չի կարելի մոռանալ, որ նացիոնալիստական գաղափարների ու զգացմունքների արտահայտիչ կարող են լինել կրոնից հեռու կանգնած, եկեղեցի չհաճախող, կրոնական ծեսերը չպահպանող մարդիկ ևս։ Մտավորականության խավերի, պարզապես լուսավորված ու կրթված մարդիկ կարող են լինել նրանք. աշխարհականացած նացիոնալիստներ, որոնք իրենց հայացքները հիմնավորում են ոչ թե ուղղակի կրոնական, այլ ուրիշ, երբեմն նաև «գիտական» փաստարկներով։ Նացիոնալիզմի «ժամանակակից» ավելի նրբին տեսակն է այդ։ Պատմության մեջ նացիոնալիզմը և շովինիզմը հայտնի են անգամ որոշ աթեիստական քողավորմամբ (օրինակ՝ Նիցշեն)։

Այսպիսով, այստեղ կարող են լինել ամենատարբեր զուգադրումներ։ Այդ առանձին հարց է։ Տվյալ դեպքում կարևոր է շեշտել, որ կրոնականի ու ազգայինի կապը նույնը չէ, ինչ կրոնայինի ու նացիոնալիստականի կապը։ Անհրաժեշտ է խստորեն տարբերել հավատացյալ, կրոնական մարդուն (որը միշտ ազգային է ու չի կարող այդպիսին չլինել) համոզված նացիոնալիստից։ Արդի պայմաններում չենք կարող ազգային չլինել, բայց կարող ենք և պետք է լինենք ո՛չ թե ազգայնականներ, այլ ինտերնացիոնալիստներ։ Նացիոնալիզմը հաղթահարելի է արդի պայմաններում, ազգայինը հաղթահարվում է պատմության երկարատև զարգացման պրոցեսում, կոմունիզմի կառուցման և ամբողջ աշխարհում նրա հաղթանակի ընթացքում։

Մենք պետք է կոնկրետ ու ներգործուն պայքար մղենք անցյալի տարբեր վերապրուկների դեմ, որոնցից են կրոնական պատկերացումներն ու նացիոնալիզմի մնացուկները։ Դրանք կարող են հանդես գալ համատեղ և առանձին-առանձին, բայց չի կարելի շփոթել դրանց դեմ մղվող պայքարի մեթոդներն ու

*ձևերը։ Նացիոնալիզմը փորձում է վարկաբեկել մեր ամենաթանկագին ու մեծ*
*նվաճումը՝ մեր ժողովուրդների բարեկամությունը, անվստահություն սերմանե-*
*լով նրանց միջև, հակադրելով միմյանց։ Այդ նա կարող է անել կրոնի միջոցով*
*և առանց կրոնի, բոլոր միջոցներով և ամենուրեք, որտեղ թեկուզ նվազագույն*
*հնարավորություն է ստեղծվում դրա համար— արվեստում, գրականության,*
*պատմագիտության մեջ և այլուր։ Վճռական պայքարն ամեն երանգի նացիո-*
*նալիզմի դեմ մեր ժողովուրդների ու ազգերի եղբայրական ինտերնացիոնա-*
*լիստական բարեկամության ամրապնդման ու հետագա զարգացման, կոմու-*
*նիզմի գործին նրանց հավատարմության անհրաժեշտ պայմանն է։*

*Կրոնի բացասական դերը մեր իրականության մեջ արտահայտվում է ամե-*
*նից առաջ նրանում, որ այն ըստ էության, խեղաթյուրելով աշխարհի օբյեկտիվ*
*պատկերը, խանգարում է մարդկանց գիտական աշխարհայացքի ձևավորմանը։*
*Ամեն մի կրոնական մարդ մեր իրականության թշնամին չէ. նա, ինչպես և*
*սովետական մյուս մարդիկ, աշխատում է մեր երկրի գործարաններում ու ֆաբ-*
*րիկաներում, կոլտնտեսություններում և սովխոզներում, գործում մեր կյանքի*
*բոլոր բնագավառներում։ Բայց կրոնական գաղափարախոսության բնույթը*
*նրան պարտադրում է ոչ ճիշտ պատկերացումներ իրականության դեպքերի ու*
*երևույթների վերաբերյալ։ Կրոնն սկզբունքորեն հրաժարումն է երկրային կյան-*
*քից, դրա ամբողջականության ժխտումը։ Իսկական, լիարժեք կյանքը, իբր,*
*այնկողմնային, անդրշիրիմյանն է։ Իր այդ քարոզով և առհասարակ իր վար-*
*դապետությամբ կրոնը մեծապես խոչընդոտում է մարդկանց դաստիարակու-*
*թյանը, իբրև կոմունիզմի բոլորանվեր ու ակտիվ կառուցողներ։ Ուստի, կրոնա-*
*կան գաղափարախոսության մերկացումը կարևորագույն խնդիր է։*

*Եկեղեցին մեր օրերում ձգտում է ներկայանալ որպես ազգային արժեք-*
*ների միակ և հուսալի պահապան։ Մինչ սովետական և ոչ մի ժողովուրդ մտա-*
*դիր չէ նրան զիջելու այն ամենը, ինչ համարում է իր սեփականությունը։ Մենք*
*այժմ պահպանում և զարգացնում ենք ազգային, ոգով մասսայական ու ժողո-*
*վրրդական բազում ավանդույթներ, ձերբազատելով դրանք կրոնական երան-*
*գավորումներից ու չարաշահումներից։Սովետական գիտնականների՝ պատմա-*
*բանների, գրականագետների, երաժիշտների, ճարտարապետների և այլոց ջան-*
*քերով ժողովուրդների տաղանդով ստեղծված բազմաթիվ գլուխգործոցներ*
*առաջին անգամ հանում են իրենց միստիկական խեղաթյուրումից ու մեկնու-*
*թյունից զերծ։ Եկեղեցական ծիսակատարությունների մի մասը կազմող երա-*
*ժըշտական ստեղծագործություններն այժմ մեր լավագույն երգիչների կատար-*
*մամբ հնչում են համերգասրահներում ու կոնսերվատորիաներում, հիացնելով*
*մեր օրերի ունկնդիրներին։ Կրոնից ու եկեղեցուց նույնպիսի «ազատագրումն»*
*է այժմ նկատվում գեղանկարչության, գրականության և ընդհանրապես ար-*
*վեստի բնագավառում։ Անշուշտ, դժվարին, ոչ մեխանիկական պրոցես է այդ,*
*բայց այն մեծ ու կարևոր աշխատանքի անխզելի մասն է, որն օգնում է կրո-*
*նայինի ու բուն ազգայինի «անջատմանը», մի բան, որ անհնար և աներևակա-*
*յելի էր անցյալում։*

*Սովետական պետությունն սկզբից և եթ մեծ հոգատարություն է ցուցաբե-*
*րում մեր երկրում պատմության և կուլտուրայի հուշարձանների պահպանման*
*ու օգտագործման նկատմամբ։ Դրա վկայությունն է և այդ մասին ՍՍՀՄ Գերա-*
*գույն սովետի վերջերս ընդունած նոր օրենսդրությունը։*

*Կրոնի դեմ մղվող պայքարն ընդգրկում է հասարակության հոգևոր կյանքի*
*բոլոր ոլորտները։ Բայց, որտեղ էլ մղվի այդ պայքարը, կոմունիստական կու-*
*սակցությունը պահանջում է չմոռանալ դրա առանձնահատկությունները։ Ան-*
*հրաժեշտ է ուշադիր ու համբերատար կերպով օգնել հավատացյալներին՝ ձեր-*
*բազատվելու խոր անցյալից մնացած այդ հոգևոր հաշիշից։ Միայն այդ ճանա-*
*պարհով, առանց ազգային ու կրոնական պատկանելության խտրության, սովե-*
*տական բոլոր մարդկանց կոմունիզմի շինարարության մեջ ներգրավելով կա-*
*րելի է վերջնականապես հաղթահարել կրոնը։*

Մոսկվա

# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ

## ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅԱՆԸ՝ ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ՀՈԳԱՏԱՐՈՒԹՅՈՒՆ

**Մ. Ռ. ԿՆՅԱԶՋՅԱՆ**
ՀԿԿ Երևանի ՙաղկոմի կազմակերպական
բաժնի վարիչ

*ՏԱՍՆԵՐՈՐԴ ՀՆԳԱՄՅԱԿՈՒՄ բարդ ու պատասխանատու*
*խնդիրներ են ծառացած Երևան քաղաքի արդյունաբե-*
*րական ձեռնարկությունների, շինարարական կազմակերպությունների, ժողո-*
*վրրդական տնտեսության մյուս ճյուղերի աշխատավորական կոլեկտիվների,*
*կոմունիստների առջև։ Պլանային առաջադրանքների և, ընդհանուր առմամբ,*
*հնգամյակի սոցիալ-տնտեսական ծրագրի իրականացման գործում վճռական*
*է և սոցիալիստական մրցության դերը։ Կուսակցական կոմիտեները և սկզբնա-*
*կան կուսկազմակերպություններն արտադրությանն առնչվող կազմակերպական*
*աշխատանքը սերտորեն զուգորդում են մասսաների ստեղծագործական ակտի-*
*վության բարձրացման հետ, առանց որի անհնարին է տեխնիկա-տնտեսական*
*առաջընթացը։ Չէ՞ որ «Սոցիալիստական մրցությունը մասսաների մեջ ծնում է*
*աշխատանքային խանդավառություն, ստեղծարարություն, առաջ է քաշում մի-*
*լիոնավոր առաջավորների, ռացիոնալիզատորների ու գյուտարարների» (Սո-*
ցիալիստական մրցության կազմակերպման հետագա բարելավման մասին
ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի որոշումը, *Երևան, 1971, էջ 3)։*

*Ելնելով սոցիալիստական մրցության կազմակերպման բարելավման նոր-*
*կա պահանջներից՝ կուսակցության Երևանի քաղկոմն ու շրջկոմները սկըզբ-*
*նական կուսկազմակերպությունների, աշխատավորական կոլեկտիվների ջան-*
*քերն ուղղել են հասարակական արտադրության արդյունավետության, աշխա-*
*տանքի ու արտադրանքի որակի բարձրացմանը։ Այդպիսի նպատակային կողմ-*
*նորոշումը դեռևս նախահամագումարյան ժամանակաշրջանում հնարավորու-*
*թյուն ընձեռեց նոր՝ տասներորդ հնգամյակն սկսել համընդհանուր վերելքի*
*մթնոլորտում։ Դրա ցայտուն վկայությունը կուսակցության XXV համագումարն*
*արժանավայել դիմավորելու համար ծավալված համաժողովրդական մրցու-*
*թյունն էր։ Այն ընթանում էր «Բարձրացնել արտադրության արդյունավետու-*
*թյունն ու աշխատանքի որակը՝ հանուն էկոնոմիկայի և ժողովրդի բարեկեցու-*
*թյան հետագա աճի» նշանաբանով։ Այդ մրցության հաղթողներ դարձան ալյու-*
*մինի, ավտոմոբիլային, էլեկտրալամպերի և ռետինա-տեխնիկական արտա-*
*դրանքի գործարանները, Ս. Մ. Կիրովի անվան քիմիական, Վ. Ի. Լենինի ան-*
*վան մետաքսի և մսի կոմբինատները, «Հայգորգ» ֆիրման, Ստ. Շահումյանի*
*անվան կաշվի արտադրական միավորումը, «Երարդշին», համաշինարարա-*
*կան առաջին տրեստը և շատ ուրիշ առաջավոր ձեռնարկություններ։*

Սոցիալիստական մրցության կազմակերպման գործում ուսանելի շատ բան կա էլեկտրասարքավորումների գործարանում։ Այստեղ մրցությունն ամրապնդվում է ուժերի ու միջոցների ճշգրիտ հաշվարկումով, խելացիորեն են զուգորդվում բարոյական ու նյութական խթանները։ Կուսակցական, արհմիութենական կազմակերպությունները և դիրեկցիան ամենօրյա ուշադրություն են նվիրում մրցության կազմակերպմանը, ստանձնած պարտավորությունների կատարմանը, ամեն կերպ նպաստում մրցողների աշխատանքային ակտիվության բարձրացմանը, նախաձեռնության զարգացմանը։ Նրանք պարբերաբար ամփոփում են մրցության արդյունքները, ընդհանրացնում ուսանելի փորձը, խրախուսում, տարածում առաջավոր կոլեկտիվների և բանվորների հայրենասիրական նախաձեռնությունը։ Ուստի օրինաչափ է, որ ձեռնարկությունը մշտապես կատարում է պետական պլանները, թողարկում բարձրորակ արտադրանք։ Այսպես, 35 արտադրատեսակից 20-ը արժանացել է պետական որականիշի։

ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը նշել է, որ հնգամյա պլանի կատարման և գերակատարման համար մղվող պայքարը պետք է դառնա յուրաքանչյուր կոմունիստի, աշխատավորի ներքին, անձնական խոր պահանջմունքը։ Ահա թե ինչու կուսակցության քաղկոմն ու շրջկոմները սկզբնական կուսկազմակերպություններից պահանջում են՝ յուրաքանչյուր աշխատավորի առջև դնել կոնկրետ խնդիրներ, հոգ տանել, որ ամեն մի բանվոր, ինժեներ, ծառայող իմանա ձեռնարկության զարգացման հեռանկարները, նրա դերը ժողովրդական տնտեսության մեջ, ըմբռնի իր անձնական պատասխանատվությունը կոլեկտիվի գործերի վիճակի համար։ Ուզում եմ ասածը հիմնավորել նույն էլեկտրասարքավորումների գործարանի օրինակով։ Այս առաջավոր ձեռնարկության կուսկազմակերպությունը, նրա բյուրոն մրցության կազմակերպման ընթացքում շերտավորված մոտեցում են ցուցաբերում արտադրական օղակների կոլեկտիվների նկատմամբ, հաշվի են առնում այս կամ այն տեղամասի, արտադրամասի առանձնահատկությունը, ամեն կերպ ջանում զարգացնել աշխատավորական կոլեկտիվների գործունեության ուժեղ կողմերը, պաշտպանում են հայրենասիրական նախաձեռնությունները, օգնում դրանց արմատավորմանը։ Այստեղ լայն արձագանք են գտել այնպիսի նախաձեռնություններ, ինչպես «Այսօր՝ ռեկորդ, վաղը՝ նորմա», «Բանվորական խիղճը արտադրանքի լավագույն հսկիչն է», «Սովետական, ուրեմն գերազանց», «Եռամսյակի երկու օրը՝ խնայված նյութի հաշվին»։

Սոցիալիստական մրցության արդյունավետության բարձրացման կարևոր պայմաններից է պարտավորությունների ու պայմանագրերի ճշգրիտ մշակումը։ Ներկայումս քաղաքի շատ ձեռնարկություններ մշակում են մեկ միասնական փաստաթուղթ՝ տարեկան պլան-պարտավորություն։ Դրա նպատակն է աշխատանքային կոլեկտիվների համար ստեղծել անհրաժեշտ պայմաններ՝ առավել լրիվ հայտաբերելու արտադրության զարգացման բոլոր ռեզերվներն ու հնարավորությունները։ Այսպես, օրինակ, «Հայէլեկտրալույս» միավորման գլխամասային գործարանում մշակվում և հաջողությամբ իրականացվում են լարված պլան-պարտավորություններ, որոնք գերազանցում են հնգամյակի կայուն առաջադրանքները։

Քաղաքի արտադրական կոլեկտիվներում լայն արձագանք գտավ Լենինգրադի մի շարք ձեռնարկությունների մրցության պրակտիկան, որի նշանաբանն է «Առաջավորների աշխատանքի բարձր արտադրողականությունից՝ կոլեկտիվների աշխատանքի բարձր արտադրողականության»։ Լենինգրադցիների փորձը պատշաճ կիրառում գտավ ալյումինագործների մոտ։ Օգտագործելով խթանման զանազան եղանակներ՝ գործարանի կուսկոմիտեն և գործարհկոմը կոլեկտիվի ջանքերը նպատակամղում են աշխատանքի արտադրողականության անընդհատ բարձրացմանը։ Եթե երեք տարի առաջ ալյումինագործներն ունեին մրցության առջևից ընթացող մեկ-երկու բրիգադա, ապա այսօր ողջ կոլեկտիվը համակված է աշխատանքային մրցակցության ոգով, անդադրում որոնում է արտադրության արդյունավետության բարձրացման նորանոր ռեզերվներ։ Վերջին տարիներին առաջավորների շարքերը համալրեցին Ա. Մանուկյանի, Ռ. Քալաշյանի, Մ. Գյանջունցի, Ն. Անտիֆեևի և այլոց ղեկավարած բրիգադները։



Այժմ քաղաքի կուսկազմակերպություններն ավելի հանգամանորեն են վերլուծում ձեռնարկությունների գործունեությունը, կիրառում արտադրապրոցեսների կառավարման, աշխատավորների ակտիվության բարձրացման առավել արդյունավետ ձևեր ու մեթոդներ։ Ստ. Շահումյանի անվան կաշվի արտադրամիավորման կուսբյուրոն ամեն ինչ անում է, որպեսզի բանվորական ժողովները, արտադրական խորհրդակցությունները, տնտեսական վերլուծության հասարակական բյուրոն, հասարակական կազմակերպությունների հանձնաժողովները գործեն ավելի արդյունավետ, պաշտպանեն ամեն մի նոր նախաձեռնություն, նպաստեն մարդկանց աշխատանքային վերելքին, ավելի շատ բրիգադաներ ու տեղամասեր ներգրավեն այդ մրցության և արտադրության վերելքին ուղղված շարժումների մեջ։ Մեծ ուշադրություն է նվիրվում ինժեներա-տեխնիկական անձնակազմի և բանվորների համագործակցությանը, տեխնիկապես ու տնտեսապես հիմնավորված նախաձեռնությունների արմատավորմանը։ Ընթացիկ տարվա փետրվարին կուսբյուրոն լսել է առաջավոր ռանդող, դաբաղարանի արտադրամասի կուսկազմակերպության քարտուղար Ռ. Սարգսյանի աշխատանքային զեկույցը։ Բանվորական աշխատատեղում ներքին ռեզերվների խելացի գործադրմամբ նա կարողացավ ժամկետից տասն օր շուտ կատարել երկամսյա լարված առաջադրանքը, աշխատանքի արտադրողականության աճը հասցնել 13,5 տոկոսի, որն ամենաբարձր ցուցանիշն է արտադրամասում։ Այդ ամենը հնարավոր է դարձել այն բանի շնորհիվ, որ Ռ. Սարգսյանի աշխատանքի արտադրողականության բարձրացման անձնական պլանի մշակմանը, գիտականորեն հիմնավորված աշխատանքային ռեժիմին անցնելուն օգնել են միավորման ինժեներները և տնտեսագետները։

Մոսկվայի Բաումանի ընտրական օկրուգի աշխատավորների հետ ունեցած նախընտրական հանդիպման ժամանակ Լ. Ի. Բրեժնևը շեշտեց, որ այժմ սոցիալիստական մրցության ձևն ու բովանդակությունը շատ բանում նոր են, համապատասխանում են երկրի զարգացման մակարդակին, մեր ապագայի պահանջներին։ Մրցողների նշանաբանը դարձել է ոչ թե պարզապես ավելին, այլև ավելի լավը, ավելի խնայողաբար անելը։ Այնտեղ, որտեղ կուսակցական, արհմիութենական կազմակերպությունները խելամիտ և ստեղծագործաբար են օգտագործում մրցության արդյունավետությունը բարձրացնելու փորձված միջոցները, լենինյան սկզբունքները,— հրապարակայնություն, արդյունքների համադրելիություն, փորձի կրկնման հնարավորություն,— հաջողությունն առկա է։

Սոցիալիստական մրցության հրապարակայնությանը մեծ ուշադրություն են նվիրում «Մասիս» կոշիկի ֆիրմայի կուսակցական, կոմերիտական ու արհմիութենական կազմակերպությունները, դիրեկցիան։ Այստեղ ստորին օղակները սիստեմատիկաբար ինֆորմացիա են տալիս պարտավորությունների կատարման, երևան եկած նախաձեռնությունների ու դրանց արմատավորման մասին։ Ֆիրմայի կուսկոմիտեի, դիրեկցիայի հատուկ հոգածության առարկա են դարձել արտադրանքի որակի բարելավմանն առնչվող հարցերը, որոնք քննարկվում են արտադրամասային սկզբնական կուսկազմակերպություններում, դրանց բյուրոների ու կուսկոմիտեի նիստերում։ Այստեղ արմատավորվել է որակի կառավարման կոմպլեքսային համակարգ, ստեղծվել արտադրանքի տեսակայնությունը որոշելու հատուկ կետ։ Դրանով հնարավոր է հսկողություն սահմանել յուրաքանչյուր աշխատատեղի նկատմամբ։ Եթե, օրինակ, բանվորը տվել է երկրորդ տեսակի կամ խոտան արտադրանք, նրա վերևում վառվում է կարմիր լույսը։ Դա նախազգուշացման նշան է։ Հերթափոխության վերջում արտադրամասերում կախվում են ցուցատախտակներ, որտեղ յուրաքանչյուր բանվոր կարող է ծանոթանալ իր աշխատանքային ընկերների օրվա արտադրական ցուցանիշներին, դրանք համեմատել անձամբ իր կատարած աշխատանքի արդյունքների հետ։ Համադրելիության, հրապարակայնության հետևողական կիրառումը ֆիրմայի աշխատավորներին օգնում է՝ բարելավելու արտադրանքի որակը, բարձրացնելու արտադրության արդյունավետությունը։

Սոցիալիստական մրցության զարգացման պրակտիկան վկայում է, որ առավել նշանակալի շարժումներն ու նախաձեռնությունները սերտորեն առնչվում են գիտատեխնիկական առաջընթացի արագացման, արտադրության տեխնիկական մակարդակի բարձրացման, աշխատանքի գիտական կազմակերպման հետ։ Աստիճանաբար ավելի է ամրապնդվում գիտության ու արտադրության կապը, գիտական կոլեկտիվներն ակտիվորեն ներգրավվում են սոցիալիստական մրցության մեջ։ Մինչդեռ ոչ վաղ անցյալում գոյություն ուներ այն թյուր կարծիքը, թե գիտական գործունեության ոլորտում հնարավոր չէ ծավալել սոցմրցությունը։ Դա պատճառաբանվում էր գիտական աշխատանքի արդյունքների համադրելիության գնահատման դժվարություններով։ Ակադեմիկոս Վ. Հ. Համբարձումյանը նկատել է. նա, ով ժխտում է մրցության դերը գիտական աշխատանքում, մոռանում է, որ գիտությունն ինքը, ամբողջությամբ վերցրած, մրցություն է։ Դրա վկայությունն արդեն ավանդույթ դարձած սոցմրցության կազմակերպման պրակտիկան է հանրապետության գիտահետազոտական հիմնարկություններում։

Քաղաքի կուսկազմակերպություններն անընդհատ կատարելագործում են սոցմրցությունը, ընդլայնում դրա շրջանակները, ամրապնդում երևան եկած ձևերը։ Արդյունաբերական ձեռնարկություններում, տրանսպորտային ու շինարարական օբյեկտներում ըստ ամենայնի զարգանում են միջգործարանային, արտադրամասերի, հերթափոխությունների, բրիգադների, տեղամասերի կոլեկտիվ, ըստ մասնագիտության, անհատական, համասեռ ձեռնարկությունների մրցությունը։ Սոցմրցության զորեղ խթան է եղբայրացած քաղաքների միջև հաստատված համագործակցությունը։ Երևանի շրջանները արդյունավետ մրցություն են ծավալում Կիևի, Բաքվի, Թբիլիսիի, Ռոստովի առանձին շրջանների, ինչպես նաև համասեռ ձեռնարկությունների կոլեկտիվների հետ։ Մրցակիցների պատվիրակությունների փոխայցելությունները, միմյանց գործերի և աշխատանքային արդյունքների մասին փոխադարձ հաղորդումները օգնում են մրցողներին՝ ներդնել նորն ու առաջավորը, ընդօրինակել ուսանելին, կիրառել մրցության նոր ձևեր ու եղանակներ։

Կուսակցության քաղաքային ու շրջանային կոմիտեները կուսակցական ու արհմիութենական կազմակերպությունների ուշադրությունը հրավիրում են առաջավոր փորձի գործնական կրկնության լենինյան սկզբունքի հետևողական կիրառման վրա։ Վերջին տարիներին ուսանելի, ընդօրինակման արժանի փորձ են կուտակել ինչպես արտադրության առաջավորները, այնպես էլ ամբողջ կոլեկտիվներ։ Կուսակցական մարմինները պահանջում են ամփոփել այդ փորձը, վերլուծել, ընդհանրացնել ու ներդնել այն, առավել արժեքավոր նախաձեռնությունները պրոպագանդել ու տարածել թերթիկների, ցուցափեղկերի, բազմատպաքանակ և քաղաքային թերթերի, ռադիոյի ու հեռուստատեսության միջոցով։

Քաղկոմի և շրջանային կոմիտեների բյուրոների նիստերում հավանության են արժանացել քաղաքի ժողովրդական տնտեսության տարբեր ոլորտներում ծավալված սոցիալիստական մրցության մասնակիցների մի շարք արժեքավոր հայրենասիրական նախաձեռնություններ։ Այս առումով ուսանելի է ՀԿԿ Լենինյան շրջկոմի աշխատանքը։ Շրջկոմի բյուրոն պարբերաբար ընդհանրացնում է սոցիալիստական մրցության կազմակերպման լավագույն փորձը, իրականացնում առաջավոր կոլեկտիվների և արտադրության առաջամարտիկների լավագույն նախաձեռնությունների տարածման ու արմատավորման արդյունավետ միջոցառումներ։ Այսպես, բյուրոն վերջերս հավանություն տվեց «Մեծ Հոկտեմբերի 60-ամյակին՝ 60 հարվածային շաբաթ» նախաձեռնությանը, որով հանդես էին եկել Հայէլեկտրագործարանի գործիքաշինական արտադրամասի, էլեկտրասարքերի գործարանի փաթաթողների բրիգադի կոլեկտիվները և Նուբբ բրդյա գործվածքների կոմբինատի առաջավոր բանվորները։

Պետական առաջադրանքների ու ստանձնած պարտավորությունների կատարման գործում վճռական դեր խաղաց «Չլինենալ ետ մնացող ոչ մի ձեռնարկություն» նշանաբանով մրցություն ծավալելու վերաբերյալ ՀԿԿ Երևանի կազմակերպության XXXV կոնֆերանսի որոշումը։ Կուսքաղկոմը շրջանային կոմիտեների և սկզբնական կուսկազմակերպությունների, տնտեսական ղեկավարների ուշադրությունը հրավիրեց արդյունաբերության կառավարումը կատարելագործելու, առկա ռեզերվները պատշաճ կերպով օգտագործելու, արտադրության նկատմամբ կուսակցական ղեկավարումն ավելի օպերատիվ ու արդյունավետ դարձնելու, սոցիալիստական մրցությանը գործարար բնույթ տալու վրա։ Այդ նախաձեռնության լայն արմատավորումը մեծապես նպաստեց տնտեսական հաջողություններին։ Քաղաքի արդյունաբերությունը սոցպարտավորությամբ նախատեսված ժամկետից երկու օր շուտ, դեկտեմբերի 24-ին փակեց տասնեորդ հնգամյակի առաջին տարին՝ 1975 թ. համեմատությամբ տալով 8,3 տոկոս աճ։ Ընդ որում, քաղաքի բոլոր ձեռնարկությունները կատարեցին իրացման տարեկան պլանը։ Պարտավորվածից ավելի իրացվեց 26 միլիոն ռուբլու արտադրանք։

Անցած տարի քաղկոմի բյուրոն հավանություն տվեց մի շարք առաջավոր ձեռնարկությունների՝ «Նաիրիտ» արտադրական միավորման, ալյումինի գործարանի, կոշիկի «Մասիս» ֆիրմայի, Վ. Ի. Լենինի անվան մետաքսի կոմբինատի, «Երարդշին» տրեստի կոլեկտիվների՝ արտադրության նոր ռեզերվներ հայտաբերելու, տնտեսման ռեժիմն ուժեղացնելու և աշխատանքային կարգապահությունն ամրապնդելու համար սոցմրցություն ծավալելու վերաբերյալ նախաձեռնությանը։ Բյուրոն որոշեց 1976 թ. նոյեմբերի 15-ից մինչև 1977 թ. փետրվարի 15-ը անցկացնել արտադրության ռեզերվների հայտաբերման, խնայողության ռեժիմի ուժեղացման և աշխատանքային կարգապահության ամրապնդման համաքաղաքային ստուգատես։ Այդ նույն նախաձեռնությունը լայն արձագանք գտավ նաև քաղաքի մյուս ձեռնարկություններում, և ստուգատեսի ընթացքում տնտեսվեցին հսկայական քանակությամբ հումք ու նյութեր, վառելիք և էլեկտրաէներգիա։

Ընդհանրացնելով սոցիալիստական մրցության կազմակերպման ու ծավալման դրական փորձը, խթանելով հայրենասիրական նախաձեռնությունները, ՀԿԿ քաղկոմը միաժամանակ բացահայտում է այդ գործում եղած թերությունները, կուսկազմակերպությունների, տնտեսական ղեկավարների ուշադրությունը սևեռում դեռևս չլուծված խնդիրների վրա։ Անցած տարվա օգոստոսին, օրինակ, կուսքաղկոմի բյուրոն քննարկեց սոցիալիստական պարտավորությունների կատարման և արտադրության արդյունավետության բարձրացման ասպարեզում թեթև արդյունաբերության ձեռնարկությունների կուսկազմակերպությունների ծավալած աշխատանքի հարցը։ Բյուրոն անհանդուրժելի համարեց այն երևույթը, որ նույնիսկ պլանների և սոցպարտավորությունների կատարման գործում հաջողության հասած կուսկազմակերպությունները մրցողների ուժերն անբավարար են ուղղում ներտնտեսական ռեզերվների բացահայտմանը, աշխատանքի արտադրողականության աճի տեմպերի արագացմանը, արտադրության արդյունավետության և թողարկվող արտադրանքի որակի բարձրացմանը։ Տրիկոտաժի, կարի «Գարուն» արտադրական միավորումների, մահուդի գործարանի կուսկազմակերպությունները չեն կարողացել ապահովել բանվորների, բրիգադների, տեղամասերի, արտադրամասերի և, ամբողջությամբ վերցրած, ձեռնարկության սոցպարտավորությունների տնտեսական հիմնավորվածությունը, մշակել կազմակերպական-տնտեսական միջոցառումներ, խորությամբ չեն ուսումնասիրել ունեցած արտադրական հնարավորություններն ու ռեզերվները։ Այդ ձեռնարկությունների սոցպարտավորությունները լարված չեն, անբավարար են նպաստում ներքին ռեզերվների որոնման համար կոլեկտիվների ուժերի մոբիլիզացմանը։ Դրանց կոլեկտիվներն իրենց սոցպարտավորություններն առանձին ցուցանիշներով կատարել էին տարվա կեսին։

Դեկորատիվ գործվածքների ֆաբրիկայի կուսկազմակերպության բյուրոյի նիստերում, ժողովներում հաճախ են քննարկվել արտադրության արդյունավետության և թողարկվող արտադրանքի որակի բարձրացմանն առնչվող հարցեր։

Սակայն, ընդունելով համապատասխան որոշումներ, կուսկազմակերպությունը դրանց կատարման համար չի ձեռնարկել անհրաժեշտ կազմակերպական աշխատանք։ Այդ պատճառով շոշափելի արդյունքներ չկան։ Ֆաբրիկայում որականիշով և «Ն» ինդեքսով արտադրանք չի թողարկվում։ Առաջին տեսակի արտադրանքը կազմում է 60 տոկոսը, ցածրորակ արտադրանք առաքելու համար ձեռնարկությունն ամեն տարի առևտրական կազմակերպություններին վճարում է զգալի տուգանք։

Մեկ ուրիշ օրինակ։ Անցած տարի կուսքաղկոմի բյուրոն քննարկեց քաղաքի շինարարական կազմակերպություններում սոցպարտավորությունների կատարման և բրիգադային կապալային մեթոդի տարածման վիճակը։ Արժեքավորելով զլոբինյան մեթոդով աշխատող բրիգադների արգասավոր գործունեությունը՝ կուսքաղկոմի բյուրոն միաժամանակ նշեց, որ № 2, «Երքիմշին», «Հարդարշին» տրեստների կուսկոմիտեները, «Հայսանտեխմոնտաժ» տրեստի կուսբյուրոն մակերեսորեն են զբաղվում սոցմրցության կազմակերպման կոնկրետ հարցերով, գործուն միջոցներ չեն ձեռնարկում ետ մնացող օբյեկտների գործերի բարելավման համար, մրցողների ջանքերը բավարար չափով չեն նպատակամղում արտադրության արդյունավետությունը և աշխատանքի որակը բարելավելու վերաբերյալ ՍՄԿԿ XXV համագումարի պահանջների կատարմանը։ Տրեստների ոչ բոլոր ստորաբաժանումներն ու օղակներն են ընդգրկված սոցիալիստական մրցության մեջ, շատ բանվորներ չունեն անհատական առաջադրանքներ և սոցիալիստական պարտավորություններ։ Համաշինարարական №№ 2, 3, «Հարդարշին», «Հայարդմոնտաժ» տրեստների, «Երևանշին» գլխավոր վարչության կուսկոմիտեները, «Մեխանիզացիա», «Հայսանտեխմոնտաժ» տրեստների կուսբյուրոները անհրաժեշտ հետևություններ չեն արել ՍՄԿԿ Կենտկոմի 1972 թ. «Շինարարության մեջ բրիգադային տնտեսական հաշվարկի նոր ձևի մասին» որոշումից, գործնական միջոցներ չեն ձեռնարկել բրիգադային-կապալային մեթոդը արմատավորելու համար։

Քաղկոմի բյուրոն քաղաքի շինարարական և մոնտաժային կազմակերպություններին պարտավորեցրեց՝ վերացնել նշված թերությունները և անհրաժեշտ միջոցներ ձեռնարկել՝ է՛լ ավելի կատարելագործելու սոցիալիստական մրցության կազմակերպումը, ապահովելու բրիգադների անցումը տնտհաշվարկի նոր ձևին, բարձրացնելու նրանց աշխատանքի արդյունավետությունը, ընդհանրացնելու զլոբինյան մեթոդով գործող լավագույն բրիգադների փորձը։

Արտադրության մարդկանց աշխատանքային ակտիվության հետագա բարձրացումը պահանջում է հետևողականորեն զարգացնել սոցիալիստական մրցության դեմոկրատական հիմունքները։ Այդ է պահանջում ՍՄԿԿ Կենտկոմի «Սոցիալիստական մրցության կազմակերպման հետագա բարելավման մասին» որոշումը։ Սակայն քաղաքի կուսակցական մարմինները, սկզբնական կուսկազմակերպությունները դեռևս չեն ստեղծել այնպիսի իրավիճակ, որպեսզի կոլեկտիվների սոցիալիստական պարտավորությունների մշակմանը, դրանց կատարման ընթացքի ստուգմանը և արդյունքների ամփոփմանը մասնակցեն բոլոր բանվորներն ու ծառայողները։ Առանձին ձեռնարկություններում սոցմրցության կազմակերպման հարցերը հազվադեպ են քննարկվում բանվորական, ինչպես և կուսակցական ժողովներում։ Մի շարք սկզբնական կուսկազմակերպություններ վճռական միջոցներ չեն ձեռնարկում՝ պրակտիկայից իսպառ վերացնելու մրցության ղեկավարման ասպարեզում եղած ձևականության, անտարբերության տարրերը, ամեն կերպ բարձրացնելու աշխատավորական կոլեկտիվների դերը մրցության հարցերի լուծման գործում։

Տնտեսական չափանիշների մեջ աստիճանաբար ավելի մեծ դեր են խաղում աշխատանքի որակական ցուցանիշները, որոնք շատ բանով են որոշում մրցության արդյունավետությունը։ Քիչ չեն և այն կուսկազմակերպությունները, տնտեսական ղեկավարները, որոնք, տարվելով նորարարների մեկ-երկու նախաձեռնություններով, միջոցներ չեն ձեռնարկում արտադրապրոցեսները մեքե-



նայացնելու և ավտոմատացնելու, ձեռքի աշխատանքը կրճատելու, աշխատանքային և արտադրական կարգապահությունն ամրապնդելու, բանվորական աշխատատեղի կազմակերպումը բարելավելու վերաբերյալ ստանձնած պարտավորությունների կատարման համար։ Այդ պատճառով էլ քաղաքի արդյունաբերական մի շարք ձեռնարկություններում իններորդ հնգամյակում դանդաղել են աշխատանքի արտադրողականության աճի տեմպերը։

Եթե ձեռնարկությունների, արտադրամասերի միջև սոցիալիստական մրցության ծավալման ասպարեզում կուսկազմակերպությունները հասել են որոշ հաջողությունների, ապա ավելի ցածր օղակների՝ բրիգադների, հերթափոխությունների, տեղամասերի և առանձնապես անհատական մրցությունը շատ հեռու է բավարար մակարդակից։ Հաճախ մրցության պայմանագիրն ստորագրողը չգիտի, թե ինչ պարտավորություններ է ստանձնել, ինչպես են դրանք կատարվում։ Շատ դեպքերում պարտավորությունները կոնկրետ չեն, դուրս չեն գալիս ծառայական պարտականությունների շրջանակից, երբեմն էլ անհատական պայմանագրերը գրվում են առանց իրենց՝ մրցողների գիտության։ Լուրջ թերություն է և այն, որ կուսկազմակերպությունները սոցմրցությունը լիովին չեն օգտագործում աշխատանքի և հասարակական սեփականության նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի ոգով մարդկանց դաստիարակությունն ուժեղացնելու, բարոյական վեհ հատկություններով նրանց տոգորելու, նրանց շրջանում կարգապահությունն ամրապնդելու համար։ Դա հատկապես վերաբերում է բնակչության սպասարկման ոլորտում սոցիալիստական մրցության կազմակերպմանը։ Այստեղ շատ հաճախ պայքարում են քանակական ցուցանիշների համար և մոռացության տալիս սպասարկման կուլտուրայի բարձրացումը։ Այսպես, օրինակ, օդային ու երկաթուղային տրանսպորտում, քաղաքային ուղևորատար տրանսպորտի ձեռնարկություններում, առևտրում, կենցաղային սպասարկման օբյեկտներում, մրցության արդյունքներն ամփոփելիս, ուշադրություն են նվիրվում միայն փոխադրումների պլանների կատարմանը, վառելիքի, էլեկտրաէներգիայի խնայողությանը և այլն, մինչդեռ սպասարկման կուլտուրայի հարցերը մղվում են երկրորդական պլան։

Սոցիալիստական մրցության հաջողության կարևոր պայմանը դրա նկատմամբ կուսակցական հոգատարությունն է, աշխատավորների զանգվածային շարժումը կազմակերպելու, ղեկավարելու և կոորդինացնելու գործում կուսկազմակերպությունների դերի բարձրացումը։ Քաղաքի կուսակցական, սովետական, տնտեսական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների ողջ կազմակերպական, մասսայական-քաղաքական գործունեությունը պետք է ուղղել պետական պլանների և սոցիալիստական պարտավորությունների կատարմանը, ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների անշեղ կենսագործմանը։ Հարկավոր է մշտապես հիշել «Արտադրության արդյունավետությունն ու աշխատանքի որակը բարձրացնելու, տասներորդ հնգամյակի առաջադրանքները հաջողությամբ կատարելու համար համամիութենական սոցիալիստական մրցության մասին» ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի, ՀամԼԿԵՄ Կենտկոմի որոշման այն հետևությունը, որ տնտեսական և սոցիալական առաջընթացի հզոր լծակ, աշխատավորների քաղաքական, աշխատանքային և բարոյական դաստիարակության դպրոց է սոցիալիստական մրցությունը, որը հիրավի համաժողովրդական բնույթ է ստացել, հասել է՛լ ավելի բարձր աստիճանի։ Այն մեծ ոգևորություն առաջացրեց բոլոր կոլեկտիվներում, խանդավառությամբ համակեց արտադրության մարդկանց։

Այդ որոշման և ՍՄԿԿ XXV համագումարի պահանջներից են բխում Երևան քաղաքի աշխատավորների սոցիալիստական նոր պարտավորությունները։ Արտադրության արդյունավետությունն ու աշխատանքի որակը բարձրացնելու, 1977 թ. և տասներորդ հնգամյակի պլանները ժամկետից շուտ կատարելու նպատակով արդյունաբերության շինարարության և ժողովրդական տնտեսության մյուս բնագավառների աշխատողները նշել են նոր, բարձր բնագծեր։ Նրանք խոստացել են կարևորագույն արտադրատեսակների մեծ մասի արտադրության և թողարկման ծավալի հնգամյա առաջադրանքը կատարել Հայաս-

տանում սովետական իշխանության հաստատման 60-ամյակի օրը՝ 1980 թ. նոյեմբերի 29-ին, իսկ արտադրանքի իրացման 1977 թ. պլանը՝ դեկտեմբերի 26-ին: Նախատեսվում է ընթացիկ տարում թողարկել և իրացնել 45 միլիոն ռուբլու արտապլանային արտադրանք, որից 18 միլիոնը՝ հանդիպական պլանով, իրականացնել նոր տեխնիկայի, առաջավոր տեխնոլոգիայի, աշխատանքի գիտական կազմակերպման, արտադրական պրոցեսների ավտոմատացման և մեքենայացման 400 միջոցառում, մշակել և յուրացնել 200 անուն արտադրատեսակների արտադրությունը: Շինարարները խոստացել են ժամկետից շուտ կատարել շինմոնտաժային աշխատանքների և շինանյութերի արտադրության տարեկան պլանները, կրճատել կարևորագույն օբյեկտների կառուցման ժամկետները: Բարձր պարտավորություններ են ստանձնել նաև մյուս բնագավառների աշխատողները:

Այսպիսով, անելիքները շատ են, հոգսերը՝ բազմատեսակ: Դրանք կուսակցական կոմիտեներից և սկզբնական կուսկազմակերպություններից հսկայական ջանքեր են պահանջում: Տարակույս չկա, որ մայրաքաղաքի կուսակցական կազմակերպությունը, քաղաքական ու կազմակերպական աշխատանքի արմատական բարելավմամբ, սոցիալիստական մրցության պատշաճ կազմակերպմամբ կապահովի առաջադրված սոցիալ-տնտեսական խնդիրների հաջող լուծումը, սոցիալիստական պարտավորությունների անվերապահ կատարումը: Երևան քաղաքի աշխատավորական կոլեկտիվներն ակտիվորեն ներգրավվել են Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 60-ամյակի պատվին ծավալված սոցիալիստական մրցության մեջ և պայքարում են մեծ տարելիցը հաջողությամբ դիմավորելու, հոբելյանական տարին արտադրական բարձր ցուցանիշներով փակելու համար:

---

# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ՀԱՆՁՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ԴԱՍՏԻԱՐԱԿԻՉ ՈՒԺԸ

**Բ. Ս. ԳԱԼՈՒՍՏՅԱՆ**
«Նաիրիտ» արտադրական միավորման
կուսկոմիտեի քարտուղար
**Պ. Ա. ՊԱՊՅԱՆ**

Երևանի «ՆԱԻՐԻՏ» ԱՐՏԱԴՐԱԿԱՆ միավորման կուսկազմակերպությունը մի ստվար ջոկատ է: Այն իր շարքերում ընդգրկում է ավելի քան ՍՄԿԿ 1.200 անդամ ու անդամության թեկնածու: Այս առումով կուսկոմիտեի և արտադրամասային-սկզբնական կուսկազմակերպությունների առջև լուրջ խնդիրներ են ծառանում՝ բարձրացնել կոմունիստների արտադրական ու հասարակական ակտիվությունը, նրանց լայնորեն ներգրավել կուսակցական աշխատանքի մեջ: Եվ նրանք լայն գործունեություն են ծավալում այդ ասպարեզում:

Կոմունիստների ակտիվության բարձրացման և նախաձեռնության զարգացման կարևոր նախապայման է կուսակցական հանձնարարությունը, որը կուսակցական-կազմակերպական աշխատանքի փորձված, պրակտիկայում իրեն արդարացրած մեթոդ է: Հանձնարարությունն զգաստացնում է կոմունիստին, բարձրացնում նրա պատասխանատվությունն իր պարտականությունների կատարման նկատմամբ, նպաստում կոլեկտիվի, կուսկազմակերպության գործերի վիճակի բարելավմանը: Հանձնարարությունը կոմունիստին համակում է այն բանի զգացումով, որ իրեն վստահում են, հավատում իր ուժերին, զգում իր կարիքը:

Հանձնարարության կարևորությունը դիտելով այսօրինակ հայեցակետով՝ կարող ենք վստահորեն ասել, որ այդ գործի դրվածքը մեզ մոտ լավ է. կոմունիստներն ակտիվորեն մասնակցում են կուսակցական կյանքին, իրենց գործունեությամբ նպաստում դրա աշխուժացմանն ու արդյունավետության բարձրացմանը: Կոմունիստների զգալի մասն ունի մշտական հանձնարարություն: Նրանցից 154-ը 39 արտադրամասային սկզբնական կուսկազմակերպություններում բյուրոների քարտուղարներ են կամ անդամներ, 62-ը՝ կուսխմբերի ղեկավարներ: Կուսակցության տասնյակ անդամներ քաղաքական և տնտեսագիտական ուսուցման օղակներում պրոպագանդիստներ են, ինչպես նաև՝ քաղինֆորմատորներ ու ագիտատորներ: Մեծ թվով կոմունիստներ, որպես մշտական հանձնարարություն, հասարակական ղեկավար աշխատանք են կատարում արհմիութենական և կոմերիտական կազմակերպություններում, շատերը ժողովրդական դրուժինայի, ժողովրդական վերահսկողության խմբերի անդամներ են: Ու եթե այս ամենին ավելացնում ենք կոմունիստներին տրվող ընթացիկ հանձնարարությունները, ապա ակնհայտ է դառնում, որ կուսկազմակերպության աշխատանքին այս կամ այն չափով մասնակցում է ՍՄԿԿ անդամների ճնշող մասը:

Այսպիսով, անժխտելի ճշմարտություն է, որ կուսակցական հանձնարարու-

իր մյուս սկզբնական կուսկազմակերպությունների ժողովներում, քաղաքական
ուսուցման հարցերը քննարկելիս, չափանիշ էին ընդունում առաջավոր պրո-
պագանդիստի ու նրա ղեկավարած սեմինարի փորձը։ Նույնիսկ 1—7վ արտա-
դրամասի տնտեսական գիտելիքների հիմունքներն ուսումնասիրող քաղխըմ-
բակի նախկին պրոպագանդիստ Ֆ. Իսրայելյանը, որը ծանրաբեռնվածության
պատճառով ազատվել էր այդ պարտականությունից, պատրաստակամություն
հայտնեց՝ ղեկավարել «Սոցիալիզմը և աշխատանքը» թեման ուսումնասիրող
կոմունիստական աշխատանքի դպրոցը։ Այժմ նա նոր հանձնարարությունը
կատարում է մեծ սիրով, ստեղծել է թեմայի մշակման և գործնական պարապ-
մունքների արդյունավետության բարձրացման իր մեթոդը, որի մասսայակա-
նացման համար արհմիութենական կոմիտեն ընդունել է համապատասխան
որոշում։

Անժխտելի ճշմարտություն է, որ կուսակցական հանձնարարությունը
ամեն մի սկզբնական կուսկազմակերպության կողմից նրա յուրաքանչյուր ան-
դամի հետ տարվող դաստիարակչական աշխատանքի արդյունավետ ձև է։ Միա-
վորման կուսկոմիտեն և սկզբնական կուսկազմակերպությունների բյուրոները
ծավալել են կազմակերպական լայն գործունեություն, որպեսզի կուսակցական-
հասարակական աշխատանքում ներգրավվեն, որքան կարելի է, շատ կոմու-
նիստներ։ Այդ ձևով հնարավոր է ապահովել կուսկազմակերպության բոլոր ան-
դամների ստեղծագործական ակտիվությունը, բարձրացնել նրանց ավանգար-
դային դերն արտադրության մեջ և այդ ամենն ուղղել ձեռնարկության առջև
ծառացած խնդիրների լուծմանը, ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների անշեղ
կենսագործմանը։ Եվ այսօր հպարտությամբ պետք է նշենք, որ մեր աշխա-
տանքի այդ մեթոդը լավ արդյունքներ է տալիս։ Առանց բացառության, բուն ար-
տադրության ոլորտի բոլոր կոմունիստները կատարում և գերակատարում են
իրենց պլաններն ու սոցպարտավորությունները։ Բնական գավից ացետիլենի
ստացման համալիրի բոլոր արտադրամասերի կոլեկտիվները ամսական պլան-
ները կատարում են 108—110 տոկոսով։ Շատ կոմունիստներ արդեն աշխատում
են ընթացիկ տարվա երկրորդ կիսամյակի հաշվին։ 1—11ա և բ արտադրամա-
սերի կոմունիստներն իրենց առջև խնդիր են դրել հնգամյակի անհատական
պլանը կատարել երեքուկես տարում։ Այդպիսի նախաձեռնությամբ հանդես են
եկել ֆրեզերագործ Ա. Ղազարյանը, կաուչուկագործներ Ս. Խոջաբաշյանը, Հ.
Մարտիրոսյանը, սոցիալիստական աշխատանքի հերոս Ս. Պետրոսյանը, թըթ-
վագործ Դ. Դումանյանը և ուրիշներ։ Նրանք ձգտում են կատարել իրենց խոսքը։
Կոմունիստների ջանքերով մրցնաթթուն, քացախաթթուն և էթինոլային լաքը
արժանացել են որակի պետական նշանի, մեծապես բարելավվել են ռեակտիվ
ացաթթվի, նաիրիտի մի քանի տեսակների, կաուստիկ սոդայի որակական ցու-
ցանիշները։ Կոլեկտիվը ջանում է ընթացիկ հնգամյակում այդ արտադրատե-
սակները ևս ներկայացնել պետական որականիշի։ Այդ պայքարի առաջին շար-
քերում կոմունիստներն են։




# ՍՈՎԵՏՆԵՐԸ ԵՎ ԲՆԱԿՉՈՒԹՅԱՆ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ

**Ս. Ի. ԳԱԼՍՏՅԱՆ**
Աշխատավորների դեպուտատների Գորիսի
շրջսովետի գործկոմի նախագահ

ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ արդի՝ զարգացած
սոցիալիզմի պայմաններում է՛լ ավելի է մեծացել սո-
վետների դերը երկրի սոցիալ-կուլտուրական խնդիրների լուծման, բնակչու-
թյան սոցիալական զարգացման գործում։ Սովետների գործունեության իմաստն
ու բովանդակությունը սովետական քաղաքացիների բարեկեցության ու կուլ-
տուրայի աճի առավելագույն ապահովումն է։ Ժողովրդի կյանքի նյութական և
կուլտուրական մակարդակի բարձրացումը համարելով կուսակցության գլխա-
վոր նպատակը տասներորդ հնգամյակում, ՍՄԿԿ XXV համագումարը կուսակ-
ցական, սովետական և տնտեսական մարմինների ուշադրությունը սևեռեց սո-
վետական մարդկանց աշխատանքի և կենցաղի պայմանների բարելավման,
առողջապահության, կրթության, կուլտուրայի առաջընթացի, այն ամենի վրա
«...ինչը նպաստում է նոր մարդու ձևավորմանը, անհատի համակողմանի զար-
գացմանը, սոցիալիստական ապրելակերպի զարգացմանը»։ Աշխատավորների
դեպուտատների Գորիսի շրջանային սովետն իր գործունեության ընթացքում
միշտ էլ ղեկավարվել է բնակչության սոցիալական զարգացման վերաբերյալ
կուսակցության նախորդ համագումարների պահանջներով և այժմ էլ համա-
գումարի որոշումներն ընդունում է որպես գործողության ուղեցույց։

Գորիսի շրջանային և գյուղական սովետները, կուսշրջկոմի և սկզբնական
կուսկազմակերպությունների ղեկավարությամբ, վերջին տարիներին զգալի
գործ են արել ո՛չ միայն կոլեկտիվ ու պետական տնտեսությունների ամրա-
պնդման, այլև գյուղերի վերակառուցման ու բարեկարգման, գյուղատնտեսու-
թյան բնագավառում աշխատող մարդկանց կենսամակարդակի բարձրացման,
նրանց օրավուր աճող կուլտուր-կենցաղային պահանջմունքների բավարարման
ասպարեզում։ Դրա վկայությունը կոնկրետ գործերն են։ Հարկ եմ համարում
նշել, որ տեղական սովետների սեսիաներում ու գործկոմների նիստերում պար-
բերաբար քննարկվում են գյուղական բնակչության կյանքի նյութական մա-
կարդակի բարձրացմանը, նրանց հոգևոր պահանջմունքների բավարարմանը
վերաբերող բազմաթիվ ու բազմաբնույթ հարցեր։ Դրանց առթիվ մշակված մի-
ջոցառումների իրականացումը դառնում է սովետների գլխավոր հոգսը։

Ոչ հեռավոր անցյալում, ասենք մեկ, մեկուկես տասնամյակ առաջ, շրջանի
բնակավայրերի մեծ մասը գտնվում էր խոր ձորերում՝ զուրկ տրանսպորտային

հարմարություններից։ Կուսակցական ու սովետական կազմակերպությունների առջև ծառացավ սոցիալական խոշոր պրոբլեմ. հրաժարվել հնի ժառանգությունից, վերջ տալ քարանձավաբնակությանը։ Չէ՛ որ գյուղի բնակիչն այլևս նախկինը չէր. ընդլայնվել էին նրա հետաքրքրությունների շրջանակները, աճել կուլտուր-կենցաղային պահանջմունքները, նա ձգտում էր ունենալ գեղեցիկ առանձնատուն ու պարտեզ, բարետես բնակավայր՝ ուղիղ ու լայն փողոցներով, սպասարկման օբյեկտներով։

Հայտնի է, որ կուսակցությունը խնդիր է դրել՝ վերացնել քաղաքի և գյուղի միջև եղած էական տարբերությունները։ Եվ տարիներ առաջ շրջանային սովետն իր հերթական սեսիաներից մեկում հանգամանորեն անդրադարձավ այդ պրոբլեմին։ Որոշվեց կազմել նախագծային անհրաժեշտ փաստաթղթեր և աստիճանաբար, շրջսովետի գործկոմի կողմից նախապես հատկացված վայրերում, սկսել նոր գյուղերի կառուցման գործը, առանց խոչընդոտելու գյուղատնտեսության զարգացմանը։ Պատմության համար շատ կարճ այդ ժամանակամիջոցում անճանաչելիորեն փոխվեց շրջանի բնակավայրերի դեմքը։ Խոր ձորերում, կիրճերում ու լեռնածերպերին են մնացել հին Խնձորեսկն ու Տեղը, Շինուհայրն ու Խոտը, Հալիձորն ու Վերիշենը, Այգեձորն ու Զորաշենը, Կոռնիձորն ու Աղատաշենը, Քարաշենն ու Բռունը և այլ բնակավայրեր։ Դրանք վերածվել են բնության զարմանահրաշ թանգարանների և գալիք սերնդին լուռ ու անխոս կպատմեն այսօրվա մարդկանց հրաշագործությունների և այն աշխատանքի մասին, որ նրանք ծավալել են գյուղաշինարարության ասպարեզում։ Այժմ նորաստեղծ գյուղերը փռվել են հարթ վայրերում և քաղաքատիպ ավանների տպավորություն են թողնում։ Այդ գյուղերին բնորոշը բազալտե երկհարկանի նորատիպ առանձնատներն են՝ ապակեպատ պատշգամբներով, մի քանի սենյակներով ու կենցաղային անհրաժեշտ հարմարություններով։ Յուրաքանչյուր գյուղ ունի իր կենտրոնական, ուղղաձիգ ու լայն փողոցները, կանոնավոր ձևավորված հրապարակը, ժամանակակից մարդու պահանջմունքները բավարարող հարմարություններ։ Արժե հենց այստեղ էլ նշել այդ ասպարեզում Հարթաշենի, Խոտի, Վերիշենի, Կոռնիձորի, Խնձորեսկի և այլ գյուղական սովետների ու նրանց գործկոմների ծավալած բազմաբեղուն գործունեությունը։ Հարթաշենը, օրինակ, որը երկու տարուց էլ պակաս պատմություն ունի և միավորում է անդրնդախոր ձորերի երեք գյուղեր՝ Զորաշենը, Այգեձորն ու Աղատաշենը, շատ կարճ ժամանակամիջոցում չէր կառուցվի, եթե գյուղական սովետը, նրա դեպուտատներն ու գործկոմը հանդես չբերեին մեծ ակտիվություն ու շահագրգռություն։ Նրանց նախաձեռնությամբ ժամանակին ու անթերի լուծվել են այնպիսի հարցեր, ինչպիսիք են՝ գյուղի հատակագծի կազմումն ու շինարարական նյութերի ձեռքբերումը, հասարակական օբյեկտների, դպրոցական տիպային շենքի կառուցումը, փողոցների բարեկարգումը, լուսավորության և խմելու ջրատարի անցկացումը և այլն։

Նույն բանը կարելի է ասել նաև գյուղական այլ սովետների մասին։ Ի դեպ, նշենք, որ բոլոր նոր, ինչպես նաև մյուս գյուղերին մի առանձին շուք ու գեղեցկություն են տալիս արտադրական ու կուլտուր-կենցաղային օբյեկտները։ Միայն անցած՝ իններորդ հնգամյակում շրջանի հանրային տնտեսություններում կատարվել է յոթ միլիոն ռուբլու կապիտալ շինարարություն, կառուցվել են արտադրական զանազան օբյեկտներ, մեքենայացվել աշխատատար շատ գործողություններ և այլն։ Լայն թափով ծավալվել են մելիորացիոն աշխատանքները. անցած հնգամյակում շրջանում յուրացվել է 1.115 հեկտար անմշակ հող և հարթեցվել 2.270 հեկտար տարածություն։ Այս ամենը հուսալի պայմաններ են ստեղծում գյուղատնտեսական էկոնոմիկայի զարգացման, բնակչության կենսամակարդակի բարձրացման համար։ Այսպես, եթե 1970 թ. գյուղատնտեսության համախառն եկամուտը շրջանում կազմում էր հազիվ 5,6 միլիոն ռուբլի, ապա այն 1975 թ. հասավ 7,4 միլիոն ռուբլու։ Դրա շնորհիվ նկատելիորեն ավելացել է բանվորների ու կոլտնտեսականների ամսական միջին վաստակը։ Մեծ վերելք են ապրել հատկապես Կոռնիձորի, Խնածախի կոլտնտեսությունները, շրջկենտրոնի «Ավանգարդ», «Զանգեզուր» սովխոզները



և այլ տնտեսություններ։ Շրջանի տնտեսությունների էկոնոմիկայի առաջընթացին մեծ չափով նպաստեց իններորդ հնգամյակի ծնունդ Որոտանի ջրանցքի գործարկումը։ Ոռոգման ջուր ստացան մի շարք տնտեսություններ (Խնձորեսկ, Տեղ, Կոռնիձոր, Հարթաշեն, Քարահունջ, Շինուհայր, Արավուս գյուղերի, «Ավանգարդ» սովխոզի և այլն), որոնք հարյուրավոր հեկտարների վրա հիմնել ու շարունակում են հիմնել պտղատու այգիներ, զարկ են տալիս կերային, բանջարանոցային ու տեխնիկական կուլտուրաների մշակությանը։

Անշուշտ, նոր պայմաններում տեղական սովետների առջև ծառացավ բնակչության կուլտուր-կենցաղային պահանջմունքների ավելի լրիվ բավարարման խնդիրը։ Ամենից առաջ հարկ եղավ գյուղերում կառուցել դպրոցների ու նախադպրոցական հիմնարկությունների, կուլտուրայի տների ու ակումբ-գրադարանների շենքեր, կենցաղսպասարկման ու առևտրական օբյեկտներ, վերակառուցել ու ընդլայնել հները, հարստացնել կապի միջոցները, իրականացնել սոցիալական զարգացման այլ միջոցառումներ։ Առանց երկմտելու ասենք, որ վերջին երկու հնգամյակում այդ բնագավառներում ևս շոշափելի գործ է արվել։ Դպրոցական տիպային, նոր ու հարմարավետ շենքեր են կառուցվել Խնածախում ու Վաղատուրում, Տեղում ու Կոռնիձորում, Տաթևում ու Շինուհայրում, Խոտում ու Հալիձորում, Քարահունջում ու Վերիշենում, Հարժիսում ու Խնձորեսկում և մյուս բնակավայրերում։ Դրանց զգալի մասը իններորդ հնգամյակի ծնունդ է։ Դպրոցական այդ շենքերն աճող սերնդի կրթության ու կոմունիստական դաստիարակության համար ունեն անհրաժեշտ պայմաններ, ընդարձակ, լուսավոր դասասենյակներ ու հարուստ լաբորատորիաներ, առարկայական կաբինետներ ու խաղահրապարակներ, մարզական դահլիճներ ու պիոներ-սենյակներ։

Շրջանային սովետը և գյուղական սովետների գործկոմները պարբերաբար անդրադառնում են ժողովրդական կրթության հարցերին, աջակցում դպրոցների դիրեկցիաներին ու մանկավարժական կոլեկտիվներին՝ պարտուսի կիրառման, նյութական բազայի ամրապնդման, երեխաների ուսման և դաստիարակության բարելավման գործում։ Բազմաթիվ օրինակներից նշեմ մեկը։ Անցած տարվա հունիսին շրջսովետի գործկոմի նիստում քննարկեցինք «1976—1977 ուսումնական տարին նախապատրաստված սկսելու միջոցառումների մասին» հարցը, քննարկումն անցավ ակտիվ մթնոլորտում։ Մասնավորապես որոշեցինք, միջնակարգ կրթությունն անթերի իրականացնելու նպատակով, ութերորդ դասարանն ավարտած բոլոր երեխաներին ընդգրկել հանրակրթական դպրոցների իններորդ դասարանները, միջնակարգ-մասնագիտական հաստատությունները, պրոֆտեխնիկական ուսումնարանները, ամրապնդել դպրոցների նյութատեխնիկական բազան, արագացնել դպրոցական շենքերի նորոգումը։ Այնուհետև հետամուտ եղանք որոշման կատարմանը և հասանք որոշակի հաջողության։

Կուսակցությունը տեղական սովետների առջև խնդիր է դնում՝ հոգատարությամբ շրջապատել մատաղ սերնդին, ընդլայնել նախադպրոցական հիմնարկությունների ցանցը։ Այդ խնդրի լուծումը երկու նպատակ է հետապնդում. նախ՝ կազմակերպել նախադպրոցական երեխաների բազմակողմանի դաստիարակությունը, երկրորդ՝ նպաստավոր պայմաններ ստեղծել հանրային արտադրության ոլորտում ներգրավված կանանց աշխատանքի համար, թեթևացնել նրանց հոգսերը։ Այժմ շրջանի 11 գյուղերում գործում են մսուր-մանկապարտեզներ, որոնցում ընդգրկված է ավելի քան 780 երեխա։ Նախատեսվում է տասներորդ հնգամյակում ընդլայնել նախադպրոցական հիմնարկությունների ցանցը, կառուցել մսուր-մանկապարտեզների մի քանի շենք։

Սովետական մարդու առողջության պահպանությունը կուսակցության, պետության հատուկ հոգատարության առարկան է։ Այդ գործի բարելավման համար պետությունը ոչինչ չի խնայում։ «Սոցիալական խնդիրների մեջ,— ասաց Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXV համագումարում,— չկա ավելի կարևոր խնդիր, քան սովետական մարդկանց առողջության մասին հոգալը։ Այստեղ մեր հաջողություններն ակնհայտ են, բայց հարկավոր է տեսնել նաև այդ բնագավառում ծառացած պրոբլեմները»։ Մեր գործունեությունը գնահատելով այս պահանջի

առումով, կարելի է ասել, որ ձեռքբերումն զգալի է: Քսանական թվականներին շրջանի բնակչությանն սպասարկել են ընդամենը առողջապահական մեկ օբյեկտ, մի քանի բուժաշխատող: Այժմ հիվանդանոցներ կան ոչ միայն Գորիսում, այլև Շինուհայր, Տեղ, Խնածախ, Տաթև գյուղերում, բուժկետեր՝ բոլոր բնակավայրերում: Աշխատավորության առողջության պահպանության շնորհակալ գործով են զբաղված տասնյակ հիմնարկություններ, որտեղ աշխատում են 57 բժիշկ և 300 միջին բուժանձնակազմ: Եվ օրինաչափ է, որ վաղուց ի վեր շրջանում վերացել են տարափոխիկ հիվանդությունները, նվազագույնի է հասել նորածինների մահացությունը, բարելավվել է բնակավայրերի սանիտարական վիճակը: Տասներորդ հնգամյակում մենք նոր հասումներ կունենանք առողջապահության ասպարեզում:

Բնակչության սոցիալական զարգացման շահերը տեղական սովետներից հրամայաբար պահանջում են՝ ամենօրյա ուշադրություն նվիրել նրա կուլտուր-կենցաղային պահանջմունքների բավարարմանը: Ես նկատի ունեմ բարիք արտադրող մարդկանց հանգստի պայմանների, կոմունալ-կենցաղային, առևտրական սպասարկման բարելավումը: Այդ ասպարեզում ևս սովետների ծավալած աշխատանքը քիչ արդյունքներ չի տվել: Բավական է նշել, որ ընդամենը մի քանի տարվա ընթացքում ակումբների, գրադարանների ու կուլտուրայի տների հիանալի շենքեր են կառուցվել ու շահագործման հանձնվել Տաթև, Խնձորեսկ, Տեղ, Վերիշեն, Քարահունջ, Շինուհայր և այլ գյուղերում, «Ավանգարդ» սովխոզում: Կուլտուրայի այդ օջախներում գյուղի մարդկանց հանգիստն անցնում է արդյունավետ ու հետաքրքրական:

Կարո՞ղ ենք, արդյոք, համեմատության եզր գտնել հնի ու նորի միջև: 1920 թ. մեր շրջանում գործել է ոչ պակաս, ոչ ավել մեկ խրճիթ-ընթերցարան: Այժմ գյուղական բոլոր բնակավայրերն ունեն մշակույթի օջախներ, որտեղ գործում են գեղարվեստական ինքնագործունեության տասնյակ խմբակներ: Միայն գյուղական գրադարանների գրքային ֆոնդը հասնում է ավելի քան 206 հազար կտորի: Տասներորդ հնգամյակում նախատեսվում է մշակույթի օջախների շենքեր կառուցել Հարթաշեն և Խոտ գյուղերում: Նախորդ հնգամյակի համեմատությամբ, կաճեն կուլտուրայի հիմնարկությունների ֆինանսական հատկացումները:

Եվ ինչու միայն դա, երբևէ աչքաթող չի արվում գյուղական բնակչության կոմունալ-կենցաղային սպասարկման բարելավումը: Բոլոր բնակավայրերում գործում են կենցաղսպասարկման կետեր, իսկ Խնձորեսկի ու Կոռնիձորի տիպային տաղավարներում կատարվում են կենցաղսպասարկման մի քանի տեսակի ծառայություններ: Հեռախոսային կոմուտատորներ են տեղադրված շրջանի գրեթե բոլոր գյուղերում: Գյուղական հիմնարկ-ձեռնարկություններում և բնակիչների տներում տեղադրված հեռախոսային ապարատների թիվը հասնում է 3.600-ի,գազօջախներինը՝ 4.000-ի: Կապի բաժանմունքներ ու խնայողական դրամարկղներ ունեն շրջանի գրեթե բոլոր գյուղերը: Նրանք կատարում են փոստային անհրաժեշտ գործարքներ ու առաքումներ: Բոլոր գյուղերը մեկը մյուսի և շրջկենտրոնի հետ կապված են բարեկարգ, ասֆալտապատ ճանապարհներով: Ավտոբուսային կանոնավոր երթևեկություն է հաստատված գյուղերի ու շրջկենտրոնի միջև:

Տարեցտարի ավելանում են կոլտնտեսականների ու սովխոզների բանվորների եկամուտները, խնայդրամարկղներում նրանց մուծած ավանդները, աճում են նրանց պահանջմունքները կուլտուրական ապրանքների նկատմամբ, բարձրանում է գնողունակությունը: Այդ ամենը պահանջում է՝ արմատապես բարելավել բնակչության առևտրական սպասարկումը, ընդլայնել առևտրի և հասարակական սննդի ցանցը: Այժմ միայն գյուղական վայրերում գործում է առևտրական և հասարակական սննդի 70-ից ավելի օբյեկտ: Իններորդ հնգամյակում մի շարք գյուղերում կառուցվել են տիպային խանութներ ու ճաշարաններ: Տասներորդ հնգամյակում նոր խանութներ կբացվեն Տեղ, Հարժիս, Վերիշեն, Կոռնիձոր, Աղբուլաղ, Բարձրավան, Շինուհայր, Խնձորեսկ, Խոզնավար գյուղերում:



Շրջանային սովետի գործկոմը շարունակ խրախուսում է այն գյուղական սովետներին, որոնք լավ են զբաղվում բնակչության կենսամակարդակի բարձրացման, նրա պահանջմունքների բավարարման հարցերով: Հարուստ փորձ ունի հատկապես Տաթևի գյուղական սովետը (գործկոմի նախագահ՝ Վ. Արշակյան): Նա ամեն ինչ անում է, որպեսզի գյուղը, նրա փողոցները, հասարակական վայրերը միշտ լինեն բարեկարգ, ունենան սանիտարական պատշաճ մաքրություն, ժամանակին բավարարվի բնակչության սպասարկումը: Եվ պատահական չէ, որ անցած տարի Տաթևում անցկացրինք տեղական սովետների գործկոմների նախագահների ու քարտուղարների շրջանային սեմինար-խորհրդակցություն, որը ուսանելի շատ բան տվեց մասնակիցներին:

Բնակչության սոցիալական զարգացմանն առնչվող հարցերի լուծմամբ պատշաճ կերպով են զբաղվում նաև Կոռնիձորի, Հարթաշենի, Վերիշենի, Խոտի գյուղական սովետները: Նրանց գործկոմների, մշտական հանձնաժողովների ու դեպուտատների ակտիվ միջամտության արդյունք են բարեկարգման ու բնակիչների նյութական ու հոգևոր աճող պահանջմունքների բավարարման ասպարեզի հաջողությունները: Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետը և ՀԱՄԽ-ն, ամփոփելով գյուղական սովետների սոցիալիստական մրցության 1975 թ. արդյունքները, հաղթող են ճանաչել նաև մեր շրջանի Կոռնիձորի գյուղսովետին և նրան շնորհել երրորդ կարգի մրցանակ, իսկ ինը դեպուտատներ պարգևատրվել են պատվոգրերով: Գյուղսովետի գործկոմը կատարել է դեպուտատներին տրված շատ պատվիրաններ, որոնք վերաբերել են աշխատավորների կուլտուր-կենցաղային պահանջմունքների բավարարմանը: Սովետի՝ կանոնավոր հրավիրվող սեսիաներում և գործկոմի նիստերում պարբերաբար քննարկվում են բնակչության սոցիալական զարգացմանը վերաբերող հարցեր: Գյուղսովետի գործկոմի և դեպուտատների նախաձեռնությամբ, կոլտնտեսության հատկացրած 40 հազար ռուբլու հաշվին, լիովին բարեկարգվել է գյուղամիջյան չորս փողոց, որտեղ անցկացվել է նաև էլեկտրական լուսավորություն: Այստեղ կառուցվել է 400 տեղանոց դահլիճով կուլտուրայի տուն, ընդարձակվել են կանաչ տարածությունները: Բոլոր ընտանիքներն ապահովված են բարեկարգ ու հարմարավետ բնակարաններով, ռադիո և հեռախոսային կապով, հեռուստատեսությամբ: Սովետը և նրա գործկոմը մոտիկից են զբաղվում դպրոցի, կուլտուրայի տան, գրադարանի, բուժկետի և բոլոր այն հարցերով, որոնք առնչվում են բնակչության սպասարկմանը:

Շատ կարևոր է բնակչության զբաղվածության ապահովումը: Դա սովետների գլխավոր հոգսերից է: Այդ ասպարեզում մենք որոշակի գործ ենք արել: Այսպես, մի ժամանակ ՀԿԿ շրջանային կոմիտեն և շրջսովետի գործկոմը Կոռնիձորից, Տեղից, Հարժիսից և այլ գյուղերից բողոքներ ստացան, որ աշխատունակ բնակիչների մի մասը հատկապես ձմռան ամիսներին պարապ է: Չէինք կարող դա անտեսել: Ուսումնասիրությունից պարզվեց, որ, իրոք, այդ գյուղերի տնտեսություններում, մեքենայացման բարձր աստիճանի պատճառով, աշխատունակ ձեռքի զգալի մասը տարվա որոշ ժամանակամիջոցում պարզապես գործ չի ունենում: Մենք դիմեցինք գործնական քայլերի: Շուտով գտանք հարցի լուծման ճիշտ ուղին: Կոռնիձորում ու Հարժիսում բացվեցին Գորիս քաղաքի «Միկրոշարժիչ» գործարանի, Տեղում՝ «Հայգորգ» ֆիրմայի Գորիսի մասնաճյուղի արտադրամասերը: Այդպիսով հնարավոր եղավ մեկընդմիշտ լուծել նշված գյուղերի բնակիչների աշխատանքով ապահովման հարցը: Էլ չեմ խոսում Շինուհայրի ռետինե կոշկեղենի գործարանի մասին, որտեղ աշխատում են ինչպես տեղի, այնպես էլ հարևան մի շարք գյուղերի մի քանի հարյուր բնակիչներ:

Գյուղական բնակչության սոցիալական զարգացման ասպարեզում ձեռք բերած որոշակի հաջողությունների շնորհիվ աստիճանաբար վերանում են գյուղի և քաղաքի միջև եղած էական տարբերությունները: Ներկայումս ցանկացած գյուղի բնակիչն իր նիստ ու կացով, ապրելակերպով, բնակարանային-կենցաղային պայմաններով գրեթե չի տարբերվում քաղաքաբնակից: Նա իր հոգևոր ու կոմունալ-կենցաղային պահանջների բավարարման նպատակով այլևս չի բռնում դեպի քաղաք տանող ճամփան: Գյուղում դրա համար ստեղծվել են ան-

*վճռել՝ ՀԱՎԵՐԺ ՌՈՒՍԱՍՏԱՆԻ ՀԵՏ։ Ահա ինչ է գրել Հովհաննես Շիրազը իր Ռուս մեծ ժողովրդին ձոնում.*

*Դաշտն Արարատյան*
*Իմ սեղան-սփռին,*
*Սևանն իմ գինին՝*
*Լեռների մեջ լուրթ,*
*Բաժակս զարկեմ*
*Արարատ սարին,*
*Կենացդ խմեմ,*
*Ռուս ժողովուրդ,*
*Քանի աշխարհում*
*Թիկունքս դու ես՝*
*Կապրի Հայաստանն...*

*Գեղամ Սարյանի* խոսf *ռուս մեծ ժողովրդին բանաստեղծությամբ սկսվող այս ժողովածուում ամփոփված են Սիլվա Կապուտիկյանի, Վ. Դավթյանի, Գ. Բորյանի, Հ. Սահյանի, Վ. Կարենցի, Հր. Հովհաննիսյանի, Հովհ. Ղուկասյանի և այլոց ստեղծագործությունները՝ նվիրված ռուս ժողովրդին, Ռուսաստանին՝ աշխարհի խաղաղության հուսալի պատվարին։*

*ՄԵՐ ԱՆԾԱՅՐԱԾԻՐ ՀԱՅՐԵՆԻՔԻ ամենատարբեր վայրերում ստեղծվել են աշխատանքային նորանոր ինտերնացիոնալ կոլեկտիվներ։ Նրանց առօրյայի, կյանքի ու կենցաղի արտացոլումը ևս սովետական գրողների նվիրական պարտականությունն է, մեր երիտասարդությանն ազգերի բարեկամության զգացումով համակելու զորավոր միջոցներից մեկը։ Այս առումով հետաքրքրական են Լ. Կարապետյանի* Մեծամորի զավակները՝ *(1973) հայկական ատոմակայանի և նրա կառուցողների մասին, Սերո Խանզադյանի* Սևանի լուսաբացը *(1974) վեպը և այլ գործեր։*

*Ամեն մի երկիր, ամեն մի ժողովուրդ ունի իր սրբազան վայրերը՝ կապված պատմական խոշոր իրադարձությունների, ժողովրդիականավոր զավակների հետ։* Սրբացած հուշարձաններ. *այսպես է վերնագրել Գ. Դեմիկյանն իր գիրքը, որը սրտառուչ խոսք է հայ ժողովրդի պատմության ճակատագրական իրադարձություններում զոհված ռուս և հայ մարտիկների սխրանքը հավերժացնող հուշարձանների մասին։*

*Իհարկե, կարելի է հիշատակել և այլ գործեր, որտեղ պատշաճն է հատուցված այս կարևոր թեմայի լուսաբանմանը, սակայն բավարարվենք այսքանով։*

*Կարծում եմ, խոսքս անավարտ կմնա, եթե չհիշատակեմ մեր ժողովրդով խանդավառված բանաստեղծուհու երախտիքը։ Իր ողջ ստեղծագործական կյանքը նա անմնացորդ նվիրաբերեց ժողովուրդների բարեկամության փառաբանմանը։ Լինելով առաջնակարգ բանաստեղծ, իր վարպետ թարգմանություններով նա լայն ասպարեզ դուրս բերեց հայ և այլազգի բազմաթիվ պոետների։ Հայաստանի* բանաստեղծը *խորագիրն է կրում Լևոն Մկրտչյանի գիրքը մեր ժողովրդի անմոռաց երախտավորի՝ Վերա Զվյագինցևայի մասին («Հայաստան» հրատ., 1974)։ Եղբայրության ճամփաները նրան բերեցին Հայաստան։ 1936 թ. նա եկավ, տեսավ իր երազի երկիրը, այն ամենը, ինչ գրքերով գիտեր միայն, և ավելի խորացավ նրա զգացմունքը. «Այդպես էլ ես կմեռնեմ, երկու երկրի սիրահարված»։ Ծնվում է նրա* Իմ Հայաստան *բանաստեղծությունների ժողովածուն, որը մի գծեցիկ հիմն է՝ նվիրված մեր լեռնաշխարհին։*

*Եղբայր ժողովուրդների բարեկամության ու համագործակցության լուսաբանումը նվիրական ու պարտավորեցնող ստեղծագործական խնդիր է. այն պահանջում է վեր հանել այդ կենարար հորձանուտում առնականացող նոր, կոմունիստական հարաբերությունները, ինտերնացիոնալ հանրությունը ցեմենտող հզոր ու բազմերանգ տարրերը։*

ԷՄՄԱ ՍԱՐՈՅԱՆ

# ՊԱՏԱՆԵԿՈՒԹՅԱՆԸ ՏՈԳՈՐԵՆՔ ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼԻԶՄԻ ՈԳՈՎ

**Ս. Ս. ՉԻԼԻՆԳԱՐՅԱՆ**
Նոյեմբերյանի № 1 միջնակարգ դպրոցի դիրեկտոր, պատմական գիտությունների թեկնածու

ՍՄԿԿ XXV համագումարը հանձնարարեց կուսակցական կազմակերպություններին՝ առանձնակի ուշադրություն դարձնել մատաղ սերընդի ինտերնացիոնալիստական դաստիարակության կարևորագույն գործին։ Այս խնդրի լուծման առումով մեծ անելիքներ ունեն նաև դպրոցների կուսակցական ու կոմերիտական կազմակերպությունները, մանկավարժական կոլեկտիվները։

Վերջին տարիներին մեր՝ Նոյեմբերյանի № 1 միջնակարգ դպրոցի կուսակցական ու կոմերիտական կազմակերպությունները և մանկավարժական խորհուրդը բազմիցս անդրադարձել են սովորողների ինտերնացիոնալ դաստիարակության հարցերին, միջոցառումներ մշակել այդ գործը պատշաճ ձևով կազմակերպելու համար։ Հատկապես ուշագրավ էին կուսակցական ժողովում «Դպրոցում սոցիալիստական հայրենասիրության և ինտերնացիոնալիզմի դաստիարակության դրվածքը» և կոմերիտական ժողովում «Դպրոցի ինտերնացիոնալ բարեկամության ակումբի գործունեության վիճակը» հարցերի քննարկումները։ Դրանք օգնեցին մեզ՝ աշխուժացնելու մասնավորապես բարձր դասարանցիների ինտերնացիոնալ դաստիարակության աշխատանքը, կատարելագործելու դպրոցի ինտերնացիոնալ բարեկամության ակումբի գործունեության ձևերն ու եղանակները, բարձրացնելու մանկավարժների պատասխանատվությունը՝ պատանիների ինտերնացիոնալիստական հայացքը գոյավորելու գործում։

Այդ ժողովներից շատ չանցած ակտիվ գործունեություն ծավալեցին բարեկամության ակումբի անդամները։ Ակումբն սկսեց նամակագրական-բարեկամական կապեր հաստատել Ռուսաստանյան Ֆեդերացիայի, Ուկրաինայի, Էստոնիայի, Վրաստանի, Ուզբեկստանի, Ղազախստանի և մյուս հանրապետությունների մի շարք դպրոցների ու նշանավոր մարդկանց հետ։ Ստացված նյութերը մենք լայնորեն ցուցադրում ենք դպրոցում, աշակերտները ծանոթանում են այդ հանրապետությունների տնտեսական և կուլտուրական կյանքի նվաճումներին, նրանց մարդկանց գործունեությանը։

Մեծ է նամակագրական կապերի կրթա-դաստիարակչական դերը։ Նամակներում արտահայտված սրտաբուխ, հայրենասիրական խոսքերը, մտքերը նպաստում են սովորողների ինտերնացիոնալիստական զգացումների խորացմանը։ Դրանք՝ այդ մտքերը, օգտագործվում են պատմության, աշխարհագրության և գրականության դասերին։ Հիշում եմ, երբ հայ ժողովրդի պատմության դասին անդրադարձա քաղաքացիական կռիվների լեգենդար հերոս-հրամանատար Գային, աշակերտուհի Գոհար Բաբաջանյանը ժպտալով հանեց մեծ զորավարի այրու՝ Նատալյա Յակովլևնայի և տղայի ստորագրությամբ իրեն ուղղված նամակն ու լուսանկարը։ 1934 թ. լուսանկար էր այն. պատկերված էր Գայը՝ կնոջ հետ՝ Կիսլովոդսկում։ Հուզիչ ու հայրենասիրական շնչով գրված նամակի բովանդակությանը ծանոթացրի աշակերտներին։ Եվ այնուհետև հաճախ էին առիթներ ծագում՝ պատմության դասերին օգտագործելու նշանավոր մարդկանց վերաբերյալ Գոհարի հասցեով ստացված նյութերը։

ՍՍՀՄ պատմության դասընթացում քիչ չեն այն թեմաները, որոնց ուսուցումը նպաստում է սովորողների լենինյան ինտերնացիոնալիստական դաստիարակությանը։ Եղբայրական ժողովուրդների միասնության, պրոլետարական ինտերնացիոնալիզմի վառ օրինակ է Անդրկով-

կասում սովետական իշխանության հաստատման համար՝ Բաքվի կոմունայի և 11-րդ կարմիր բանակի մղած հերոսական պայքարը: Մի խումբ աշակերտների հետաքրքրում էին այդ պայքարի պատմության առանձին մանրամասնություններ: Նամակ գրեցինք այն ժամանակվա անցքերի ականատես ու ակտիվ մասնակից Ա. Ի. Միկոյանին: Նա սիրով պատասխանեց ակումբի անդամներին. ուղարկեց իր դիմանկարը՝ հայերեն մակագրությամբ և 11-րդ կարմիր բանակի հեղափոխական-մարտական գործողությունների վերաբերյալ «Յունոստ» ամսագրում տպագրված իր հուշերը, ինչպես նաև 1920 թ. երկու այլ լուսանկար: Դրանցից մեկում պատկերված էին 11-րդ կարմիր բանակի կազմակերպիչներ ու ղեկավարներ Օրջոնիկիձեն, Կիրովը, Միկոյանը, Եփրեմովը, Շկիրյատովը և ուրիշներ: Այդ ամենն օգտագործում ենք պատմության դասերին:

Ուշագրավ էր ջոկատներից մեկի նամակագրական կապը Ուկրաինայի պարտիզանական միավորման հրամանատար, Սովետական Միության հերոս, գեներալ Մ. Ի. Նաումովի հետ: Վերջինս իր նամակներից մեկում գրում էր, թե ինքը հպարտանում է, որ իր միավորման պարտիզանական ջոկատներում, կողք-կողքի, միասնական գաղափարի ու նպատակի համար մարտնչում էին ՍՍՀՄ եղբայրական ժողովուրդների բազմաթիվ ներկայացուցիչներ: Նա երախտագիտությամբ էր արտահայտվել միավորման՝ Ա. Ի. Միկոյանի անվան հայկական պարտիզանական ջոկատի և նրա դասակներից մեկի հրամանատար, մեր շրջանի Շավարշավան գյուղի բնակիչ Վ. Աբովյանի ու նրա մարտական ընկերոջ, համագյուղացի Շ. Ադամյանի մասին, որոնք արիաբար մարտնչել ու զոհվել են ֆաշիստների դեմ մղված ծանր մարտերից մեկում:

Աշակերտների ինտերնացիոնալ դաստիարակության հետաքրքրական փորձ ունի ուսուցչուհի Օ. Մանուկյանի ղեկավարած VIII «ա» դասարանը: Երրորդ տարին է, ինչ նա բարեկամական կապի մեջ է Ուկրաինական ՍՍՀ Իվանո-Ֆրանկովսկի մարզի Գալիչի շրջանի Դուբովիցի անվան № 1 դպրոցի VIII «ա» դասարանի երեխաների հետ: Այդ բարեկամության հիմքը դրվեց Ուկրաինական ՍՍՀ մի շարք ուսուցիչների և պատանի տուրիստների՝ մեր դպրոց կատարած այցելության ժամանակ: Եվ բարեկամությունը դարձավ ավանդական: Մեր ութերորդցիները կազմեցին այդ բարեկամությանը նվիրված ալբոմներ: Նրանցից ամեն մեկը ձևավորեց իրեն հատկացված էջերը, փակցրեց ուկրաինացի բարեկամի լուսանկարը, նրա մասին գրեց շարադրություն: Ալբոմի մեկ օրինակը ուղարկեցինք դուբովիցիներին:

Երկու դպրոցների կապերն աստիճանաբար նոր ձևեր ու բովանդակություն են ստանում: Այդ նպատակին հատկապես լավ են ծառայում տեխնիկական միջոցները՝ ձայնագրիչը, ռադիոհանգույցը, կինոնկարահանման սարքավորումը և այլն: Այդ գործում աշակերտներին օգնում են ֆիզիկայի ուսուցիչներ Գ. Գիշյանն ու Ա. Մարտիրոսյանը: Նոր տարվա նախաշեմին դասղեկ Օ. Մանուկյանի նախաձեռնությամբ հրավիրվեց դուբովիցիներին նվիրված երեկույթ, որի ամբողջ արարողությունը ձայնագրվեց և հուշանվերների հետ ուղարկվեց ուկրաինացի բարեկամներին՝ որպես նոր տարվա նվեր: Ութերորդ դասարանցիները ձայնագրեցին իրենց կատարմամբ հայկական, ռուսական, ուկրաինական երգեր, արտասանություններ և իրենց ստեղծագործական աշխատանքի նմուշների ու դպրոցական առօրյային վերաբերող տվյալների հետ միասին ուղարկեցին ուկրաինացի բարեկամներին: Նրանց նամակագրական կապերը միաժամանակ յուրօրինակ ինքնահաշվետվություն էին ոչ միայն ուսման, այլև ամռանն ու աշնանը գյուղատնտեսական դաշտային աշխատանքներին իրենց մասնակցության վերաբերյալ:

Դասղեկ ուսուցիչներին ուսանելի շատ բան տվեցին ՀԿԿ Նոյեմբերյանի շրջկոմում պատմության, գրականության և աշխարհագրության ուսուցիչների համար կազմակերպված գիտապրակտիկ կոնֆերանսը, սովորողների ինտերնացիոնալ բարեկամության ամրապնդման նպատակով մեր և Դեբեդաշենի № 1 միջնակարգ դպրոցների կատարած աշխատանքի փորձի մասին մեթոդական զեկուցումները: Հատկապես բարձր գնահատվեց կոմունիստ դասղեկներ Ջ. Մամյանի, Է. Գաբրիելյանի, Վ. Ամիրաղյանի, Ֆ. Այդինյանի և ռուսաց լեզվի ուսուցչուհի Մ. Անդրեևսկայայի ղեկավարած դասարաններում ծավալված աշխատանքը:

Ինտերնացիոնալ բարեկամության կապերի ամրապնդման առավել լավ ձև է հանդիպումների կազմակերպումը: Մեր դպրոցը սերտ կապերի մեջ է Վրացական ՍՍՀ Ռուսթավիի № 11 ռուսական դպրոցի հետ, ուր սովորում են 17 ազգությունների երեխաներ: Ինքը՝ այդ քաղաքը, ՍՍՀՄ բազմազգ ժողովուրդների եղբայրական համագործակցության մի վառ օրինակ է: Նրա արդյունաբերական ձեռնարկություններն ու կուլտուրական օջախները բարձրացել են ռուսների, վրացիների, հայերի, ադրբեջանցիների ու այլ ազգությունների ներկայացուցիչների միասնական ջանքերով: Մեր դպրոցի աշակերտները եղել են այդ քաղաքում, ծանոթացել մետալուրգիական կոմբինատի, արհեստական մետաքսաթելի գործարանի մարդկանց հետ, այցելել քաղաքի տեսարժան վայրերը: Դպրոցի IX «բ» դասարանցիները վաղուց նամակագրություն ունեն Ռուսթավիի դպրոցի IX «բ» դասարանի հետ: Հուզիչ էր բարեկամական հանդիպումը երկու դպրոցների աշակերտության միջև, որի կազմակերպմանը ակտիվորեն աջակցեցին դպրոցների կուսակցական ու կոմերիտական կազմակերպությունները, ծնողները: Հանդիպումը վերածվեց իսկական բարեկամական ցույցի և ունեցավ դաստիարակչական մեծ նշանակություն:

Սովորողների ինտերնացիոնալ դաստիարակությանը, այլ դպրոցների հետ սերտ կապերի հաստատմանը նպաստում են նաև պատերազմի վետերանները, զինվորականները, գիտության աշխատողները: Տարիներ առաջ մեր դպրոց եկավ Հայրենական պատերազմի վետերան, կիևցի Ալեքսեյ Պետրովիչ Բազալովիչը: Եկել էր տեսնելու իր մարտական ընկերոջը՝ դպրոցի պատմության ուսուցիչ Ա. Զուրաբյանին: Ուկրաինացի հյուրը հուզիչ հանդիպում ունեցավ նաև մեր դպրոցի բարձր դասարանցիների հետ: Նրա միջոցով բարեկամական, նամակագրական կապ հաստատվեց Կիևի մի շարք դպրոցների հետ:

Զինվորների, հատկապես բանակում ծառայող մեր սաների միջոցով տարբեր հանրապետությունների դպրոցականների հետ նամակագրական կապերի հաստատման լավ փորձ ունի կոմունիստ ուսուցչուհի Է. Գաբրիելյանի ղեկավարած IX «ա» դասարանը:

Բարեկամությունը սահման չունի: Գնալով ընդլայնվում են մեր դպրոցի բարեկամական կապերը: Ավանդական է դարձել նամակագրությունը Հունգարիայի Սոցիալիստական Հանրապետության Բուդապեշտ, Սոլնոկ, Բալաշադյարմատ քաղաքների դպրոցականների հետ: Առանձնապես հետաքրքրական է VI «ա» դասարանցիների բարեկամությունը Բալաշադյարմատի № 1 դպրոցի սովորողների հետ: Այդ կապերի հաստատման հիմքը դրեց նույն քաղաքի բնակիչ դոկտոր Զոլտան Կելեմենը, որն ինձ անձնապես ծանոթ էր դեռ Հայրենական պատերազմից: Մոտենում էր Լենինի ծննդյան 105-րդ տարեդարձը: Եվ ահա այդ օրերին Բալաշադյարմատի դպրոցականներից մի նամակ ստացվեց, ուր հունգար երեխաները երախտագիտությամբ էին արտահայտվել 1919 թ. հունգարական հեղափոխության, այնտեղ սովետական իշխանության հաստատման գործին ռուսական պրոլետարիատի և Վ. Ի. Լենինի ցույց տված աջակցության մասին: Նրանք իրենց շնորհակալությունն էին հայտնել նաև սովետական բանակին՝ հունգար ժողովրդին գերմանական ֆաշիզմի լծից ազատագրելու համար: Մեր դպրոցականները սիրով կատարեցին հունգարիայի երեխաների խնդրանքը. նրանց ուղարկեցին նյութեր՝ Վ. Ի. Լենինի ծննդյան տարեդարձի առթիվ կազմակերպվող ցուցահանդեսի համար: Փոխարենը նրանք մեզ տրամադրեցին հունգար ժողովրդի տաղանդավոր զավակներ, ականավոր հեղափոխականներ Շանդոր Պետեֆիի, Կոշուտի, Բելա Կունի, Տիբոր Սամուելի և ուրիշների լուսանկարները, ինչպես նաև 1848—49 թթ. և 1919 թ. հունգարական հեղափոխությունների վերաբերյալ հարուստ նյութեր, որոնք օգտագործում ենք պատմության դասերին:

Շուրջ ութ տարի է, ինչ դպրոցը ինտերնացիոնալ-բարեկամական կապերի մեջ է Բուլղարիայի Պլովդիվ, Վառնա, Վրացա քաղաքների դպրոցականների հետ: Այդ կապերի սկիզբը դրվեց տարիներ առաջ, երբ Սովետական Միության հերոս, գեներալ Ա. Կարապետյանի հետ մեր դպրոցում հյուրընկալվեցին Բուլղարիայի պատանի տուրիզմի և դպրոցական աշխատողներ: Վրացայի դպրոցականները մեզ ուղարկեցին բուլղար ժողովրդի ազատության համար մարտնչած Խրիստո Բոտևի, Վ. Լևսկու, ինչպես նաև Բուլղարիայի և միջազգային կոմունիստական ու բանվորական շարժման ականավոր գործիչներ Գ. Դիմիտրովի, Դ. Բլագոևի, Վ. Կոլարովի նկարները: Դասավանդման ժամանակ օգտագործում ենք նաև բուլղար բարեկամների ուղարկած՝ 1933 թ. Ռայխստագի հրկիզման առիթով ֆաշիստների սարքած դատական պրոցեսում Գ. Դիմիտրովի արտասանած մեղադրական ճառի ձայնապնակները:

Բարեկամական նամակագրական կապեր ենք հաստատել նաև Բեռլինի Է. Թելմանի անվան և Չեխոսլովակիայի մի շարք դպրոցների հետ:

Մեր դպրոցում տարեցտարի բարելավվում է պատանիների ինտերնացիոնալ դաստիարակության նպատակով տարվող աշխատանքը, ավելի բազմազան են դառնում միութենական հանրապետությունների և սոցիալիստական երկրների դպրոցականների հետ մեր ունեցած բարեկամական կապերի ձևերն ու եղանակները: Այդ ամենը նպաստում են պատանիների կոմունիստական աշխարհայացքի ձևավորման գործում ինտերնացիոնալ դաստիարակության դերի բարձրացմանը:

# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅԱՆ ՑՈՒՑԱՆԻՇՆԵՐԻ ԵՎ ՉԱՓԱՆԻՇՆԵՐԻ ՄԱՍԻՆ*

**Բ. Հ. ԵՂԻԱԶԱՐՅԱՆ**
Տնտեսագիտության դոկտոր, պրոֆեսոր

*Երկրի տնտեսական զարգացման հիմնական ուղղությունը մոտակա տարիներին և երկարատև հեռանկարում, ինչպես ուղենշվեց ՍՄԿԿ XXIV և XXV համագումարներում, հանրային արտադրության արդյունավետության զգալի բարձրացումն է։ ՍՄԿԿ XXV համագումարում Լ. Ի. Բրեժնևի հաշվետու զեկուցման մեջ ուղղակի ասվում է. «Երկրի առջև կանգնած տնտեսական և սոցիալական բազմազան խնդիրները հաջողությամբ լուծելու համար այլ ուղի չկա,* բացի աշխատանքի արտադրողականության արագ աճից, ամբողջ հանրային արտադրության արդյունավետության խիստ բարձրացումից։ *Շեշտը արդյունավետության վրա դնելը, և այդ մասին հարկ է կրկին ու կրկին ասել, մեր ամբողջ տնտեսական ստրատեգիայի կարևորագույն բաղկացուցիչ մասն է»* (ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետվությունը և կուսակցության հերթական խնդիրները ներքին ու արտաքին քաղաքականության բնագավառում, *էջ 70)։*

*Արտադրության արդյունավետության բարձրացումը լայն հասկացություն է։ Այն մարմնավորում է գիտատեխնիկական առաջընթացի նվաճումները, որոնց թվում նաև արտադրության ինտենսիվացումը, արտադրանքի որակի բարձրացումը և աշխատանքի արտադրողականության աճին նպաստող միջոցառումները։ Սակայն գիտատեխնիկական ոչ բոլոր նորույթներն են, որ կարող են անմիջապես նյութականացվել, ներդրվել արտադրության մեջ։ Ելնելով տվյալ ժամանակահատվածում հասարակության տնտեսական հնարավորություններից և զարգացման նպատակներից, անհրաժեշտ է ընտրել արտադրության զարգացման այնպիսի ուղղություններ և դրանց իրագործման տեխնիկական, տեխնոլոգիական ու կազմակերպչական այնպիսի միջոցներ, որոնք կապահովեն զարգացման առավել բարձր տեմպեր, առկա ռեսուրսների ամենից ավելի նպատակահարմար օգտագործում։ Այստեղ է, որ որոշիչ խոսք ունի տալու արդյունավետության տեսությունը՝ միջոցառումների տնտեսական արդյունավետության գնահատման և դրանցից լավագույնների ընտրության իր մեթոդներով։*

*Ինչպես երևաց արտադրության արդյունավետության պրոբլեմին նվիրված վերջին բանավեճից (տե՛ս բանավեճին նվիրված հոդվածները* «Вопросы экономики» *ամսագրի 1974 թ. 3—12 և 1975 թ. 1—6 համարներում) և ակադեմիկ Տ. Խաչատուրովի եզրափակիչ հոդվածից* (Т. Хачатуров, Эффективность общественного производства. «Вопросы экономики», 1975 г., № 6), *այդ կարևորագույն պրոբլեմի միայն որոշ հարցերն են լուծված, իսկ էական նշանակություն ունեցող շատ հարցեր առայժմ հետազոտվում են։ Կան հարցեր, որոնց ուսումնասիրությունը նույնիսկ դեռ չի սկսված։*

*Տնտեսական արդյունավետության էության մասին շատ կարծիքներ են հրապարակված։ Այսպես, օրինակ, Յա. Կվաշան, որպես հանրային արտադրության արդյունավետության միասնական չափանիշ, առաջարկում է ազգային եկամտի աճի տեմպը՝ հաշվի առած ազգաբնակչության թվի, աշխատանքային տարվա տևողության և եկամուտների դիֆերենցացիայի փոփոխությունները (տե՛ս* «Вопросы экономики», 1974 г., № 5, стр. 123)*։ Ֆ. Մարտինկևիչի և Մ. Կունյավսկու կարծիքով, սոցիալիստական վերարտադրության տնտեսական արդյունավետության ամենից ավելի կոնկրետ արտահայտությունը և ընդհանուր չափանիշը աշխատավորների բարեկեցության մակարդակն է, որի ցուցանիշ կարող է լինել բնակչության մեկ շնչին հասնող իրական եկամուտների չափը, հաշվի առած նաև ազատ ժամանակի մեծությունը (տե՛ս* «Вопросы экономики», 1974 г., № 12, стр. 112)*։ Կան և այլ կարծիքներ, սակայն այժմ արդեն տնտեսագետների ճնշող մեծամասնությունն ընդունում է, որ ծախսերի արդյունավետությունը բնորոշվում է որպես այդ ծախսերի և դրանց միջոցով ստացված արդյունքի չափակցում, ըստ որում, որպես չափակցման եղանակ հանդես է գալիս այդ մեծությունների հարաբերությունը։ Ծախսերի հարաբերությունն արդյունքին ներկայացնում է տեսակարար ծախսերի մեծությունը, իսկ արդյունքի հարաբերությունը ծախսերին՝ տեսակարար արդյունքը։*

*Ինչպես հայտնի է, արտադրության ծախսերը բաժանվում են երկու հիմնական խմբի՝ ընթացիկ և ավանսավորված. ըստ որում, առաջինները մասնակցում են արդյունքի ստացմանը մեկ անգամ, իսկ մյուսներն օգտագործվում են բազմակի, այդքան անգամ էլ ապահովելով համապատասխան արդյունքի ստացումը։ Հետևաբար, պետք է տարբերել ընթացիկ ծախսերի և ռեսուրսների արդյունավետության հասկացությունները, որոնց գնահատման մեթոդները նույնպես կունենան իրենց առանձնահատկությունները։ Ելնելով ասվածից՝ արտադրության ծախսերի արդյունավետությունը, մեր կարծիքով, ավելի ընդհանուր ձևով կարելի է բնորոշել որպես այդ ծախսերի և դրանց միջոցով միանվագ կամ որոշակի ժամանակամիջոցի ընթացքում բազմակի անգամ ստացվող արդյունքի հարաբերություն։ Մեր տնտեսագիտական գրականությունում ընդունված ընթացիկ ծախսերի և ռեսուրսների արդյունավետություն հասկացությունները ավելի վաղ անվանել ենք միանվագ և շարունակական արդյունավետություն (տե՛ս* Սոցիալիստական վերարտադրության լենինյան ուսմունքը, *ՀՍՍՀ ԳԱ հրատ., 1970)։*

*Ծախսերի և դրանց արդյունքի հարաբերությունը (ինչպես և դրա հակադարձ մեծությունը՝ արդյունքի հարաբերությունը ծախսերին) արդյունավետության ցուցանիշի ընդհանուր տեսքն է։ Պայմանավորված դիտարկվող ծախսերով և դրանց արդյունքի ձևով կարելի է կազմել արդյունավետության բազմաթիվ և բազմապիսի ցուցանիշներ, որոնց համակարգը ծառայում է տարբեր ծախսումների արդյունավետության բազմակողմանի գնահատմանը։*

*Եթե որպես ծախսումներ դիտարկենք կապիտալ ներդրումները, նոր տեխնիկայի արմատավորման կամ գիտության վրա կատարված ծախսերը, կենդանի աշխատանքը, հիմնական ֆոնդերը կամ այլ ռեսուրսներ, արտադրության ընթացիկ ծախսերը, ապա համապատասխանաբար կստանանք դրանց արդյունավետության ցուցանիշներ։ Նույն ծախսումների համար փոփոխելով արդյունքի տեսքը, օրինակ, որպես արդյունք դիտարկելով համախառն կամ իրացված արտադրանքը, զուտ կամ հավելյալ արդյունքը, շահույթը, ինքնարժեքի իջեցումը, կենդանի աշխատանքի խնայողությունը կամ այլ մեծություններ, կստանանք տվյալ տիպի ծախսումների արդյունավետությունը գնահատելու ցուցանիշների համակարգ։*

*Արդյունավետության ցուցանիշի վերաբերյալ տնտեսագետների կարծիքները կարելի է բաժանել երկու խմբի։ Ոմանք պնդում են, որ գոյություն ունի*

* *Տպագրվում է հարցադրման կարգով.* Խմբ.։

արդյունավետության միասնական ցուցանիշ, իսկ մյուս խմբի ներկայացուցիչներն արդյունավետությունը ցուցանիշների համակարգի միջոցով գնահատելու կողմնակից են։ Վերը նշված համակարգի գոյությունն իսկ ինքնին պատասխան է հարցին։ Ծախսումները և դրանց արդյունքներն այնքան բազմազան են, որ մեկ միասնական ցուցանիշով երբեք հնարավոր չէ գնահատել արդյունավետությունն ամբողջովին, ընդհանրացած ձևով, բոլոր կողմերից։ Դրա համար անհրաժեշտ է ցուցանիշների համակարգ, որն օրինաչափ ստացվում է ցուցանիշի ընդհանուր արտահայտությունից, դրանում փոփոխելով ծախսումների և դրանց արդյունքի արտահայտման ձևը։ Ցուցանիշներից յուրաքանչյուրը ծառայում է արդյունավետության որոշակի կողմի գնահատման համար, ըստ որում հնարավոր է, որ տարբեր ցուցանիշներ կունենան փոփոխման տարբեր ուղղություն, իսկ որոշ, օրինակ, սոցիալական բնույթի արդյունքի քանակական գնահատման համար հնարավոր է, որ արդյունավետության ցուցանիշ գոյություն չունենա։

Ինչքան շատ են համակարգի ցուցանիշները, այնքան ավելի լրիվ և բազմակողմանի կարելի է գնահատել տվյալ միջոցառման արդյունավետությունը։ Միակ պայմանը, որ պետք է ապահովել, դա ծախսումների և արդյունքի՝ ըստ տեղի, ժամանակի ու մեծության ճիշտ համապատասխանությունն է։ Դա նշանակում է, որ արդյունավետության ցուցանիշում տվյալ ծախսումներին կարելի է առնչել միայն դրանց միջոցով ստացված արդյունքը կամ տվյալ արդյունքին կարելի է առնչել միայն այն ծախսումները, որոնց շնորհիվ այն ստացվել է։ Ցավոք, պետք է նշել, որ այս պայմանը միշտ չէ, որ հաջողվում է ապահովել, որի հետևանքով արդյունավետության գնահատականը տարբեր է ստացվում տվյալ ծախսումների իրական արդյունավետությունից։ Դրանից խուսափելու կարևոր պայման է ժամանակի լագի ճիշտ հաշվառքը, որը բարդ և ծավալուն հարց է և դուրս է մեր հոդվածի շրջանակներից։

Արդյունավետության ցուցանիշների համակարգը կարելի է դասակարգել ըստ տարբեր հատկանիշների, որը հնարավորություն է ընձեռում ավելի խորը ընկալել ցուցանիշների տնտեսական բովանդակությունը և ճիշտ որոշել դրանց պրակտիկ օգտագործման ոլորտները։ Այդպիսի դասակարգման փորձը մեր կողմից արվել է հիմնական ֆոնդերի արդյունավետության ցուցանիշների համար (տե՛ս «Հայաստանի ժողովրդական տնտեսություն» ամսագրի 1974 թ. № 4)։ Այստեղ կտանք ցուցանիշների ընդհանուր դասակարգումը, չկոնկրետացնելով այն որևէ տեսակի ծախսերի համար։ Դասակարգման երեք հատկանիշներ այլ առիթով արդեն նշեցինք վերևում։ Դրանցից մեկը դասակարգումն է ըստ այն բանի՝ ցուցանիշի համարիչում արդյունքն է, թե՞ ծախսերի մեծությունը։ Մի խմբի յուրաքանչյուր ցուցանիշին համապատասխանում է մյուս խմբի որոշակի ցուցանիշ, որը ներկայացնում է առաջինի հակադարձ մեծությունը։ Օրինակ, աշխատանքի արտադրողականությունը կամ ֆոնդահատույցին միարժեք համապատասխանում են աշխատատարության և ֆոնդատարության ցուցանիշները։ 1974 թ. ՍՍՀՄ արդյունաբերության մեջ միջին ֆոնդահատույցը կազմել է մոտ 1,5 ռուբլի, աշխատանքի արտադրողականությունը, մեկ մարդու հաշվով, տարեկան 15,7 հազար ռուբլի, իսկ դրանց հակադարձ մեծությունները՝ ֆոնդատարությունը և աշխատատարությունը, համապատասխանաբար կլինեն 0,67 և 0,06։ Երկրորդ հատկանիշը ծախսերի՝ արդյունքի ստացմանը մասնակցելու սկզբունքն է, ըստ որի տարբերվում են ընթացիկ ծախսերի և ռեսուրսների արդյունավետության ցուցանիշներ, որոնք համապատասխանաբար ծառայում են միանվագ և շարունակական արդյունավետության գնահատման համար։ Որպես օրինակ կարելի է նշել շահութաբերության ցուցանիշներն ըստ ինքնարժեքի և ըստ արտադրաֆոնդերի, որոնք 1974 թ. ՍՍՀՄ արդյունաբերությունում, միջին հաշվով, կազմել են մոտ 16 և 17,7 տոկոս։ Երրորդ հատկանիշը պայմանավորված է ծախսերի ոլորտով և բնույթով, ըստ որի առանձնացվում են կապիտալ ներդրումների, հիմնական կամ շրջանառու ֆոնդերի, նոր տեխնիկայի, աշխատանքային ռեսուրսների, գիտության, արտադրական կամ ոչ



արտադրական գործունեության և այլ տիպի ծախսերի արդյունավետության ցուցանիշների խմբեր։

Ստորև կբերենք արդյունավետության ցուցանիշների դասակարգման մի քանի այլ կարևոր հատկանիշներ ևս, որոնք անհրաժեշտ են ցուցանիշների կոնկրետացման և պրակտիկ օգտագործման համար։ Հասկանալի է, որ ոչ բոլոր ցուցանիշներն ունեն նույնանման նշանակություն և կարևորություն ծախսումների արդյունավետությունը գնահատելու գործում։ Այս տեսանկյունից արդյունավետության ցուցանիշների համակարգը կարելի է բաժանել գլխավոր և օժանդակ ցուցանիշների։ Գլխավոր ցուցանիշում որպես արդյունք վերցվում է այն հետևանքը, որի ստացումը տվյալ ծախսումների հիմնական նպատակն է։ Մնացած բոլոր ցուցանիշները կլինեն օժանդակ։

Այսպիսի բաժանումն անհրաժեշտ է այն տեսակետից, որ արդյունավետության տարբեր ցուցանիշներ մեկ տարբերակից մյուսին անցնելիս կարող են փոփոխվել տարբեր չափով և նույնիսկ հակառակ ուղղություններով։ Դա նշանակում է, որ եթե տարբերակները համեմատվեն տարբեր ցուցանիշներով, ապա կստանանք և տարբեր նպատակահարմար տարբերակներ, որը անորոշություն կմտցնի որևէ միջոցառման պարամետրերի ընտրության գործում։ Տարբերակների համեմատության և լավագույնի ընտրության նպատակով ցուցանիշների համակարգի օգտագործումը ընդունելի չէ։ Այս դեպքում անհրաժեշտ է օգտվել մեկ ցուցանիշից՝ արդյունավետության գլխավոր ցուցանիշից։ Եթե ծախսումներն ունեն մեկից ավելի նպատակներ, անհրաժեշտ է դրանք միացյալ, կոմպլեքս ձևով արտահայտել ընդհանրացնող գլխավոր ցուցանիշում։ Եթե դա հնարավոր չէ, պետք է հիմք ընդունել ծախսումների ամենից ավելի կարևոր նպատակը։ Իսկ եթե կան մեկից ավելի համարժեք նպատակներ և դրանք կոմպլեքս ձևով արտահայտել մեկ ցուցանիշում՝ անհնար է, կունենանք նաև արդյունավետության մեկից ավելի գլխավոր ցուցանիշներ և հարկ կլինի սահմանել տարբեր նպատակների իրագործման հարմար համամասնությունները։

Ըստ ծախսերի և դրանց արդյունքի ընդգրկման աստիճանի կարելի է տարբերել լրիվ և մասնակի արդյունավետության ցուցանիշներ։ Առաջին տիպի ցուցանիշներում արտացոլված են տվյալ արդյունքն ապահովող բոլոր ծախսումները, իսկ երկրորդում արդյունքն առնչվում է այն ապահովող ծախսումների մի որոշակի մասին միայն։ Հասկանալի է, որ վերջինները, որոնց մի մասնակի ձևն են առանձին-առանձին վերցրած ռեսուրսների կամ ընթացիկ ծախսերի արդյունավետության ցուցանիշները, կարելի է օգտագործել արդյունքի վրա ծախսումների առանձին մասերի ազդեցությունը վերլուծելու նկատառումով, սակայն դրանք չեն արտահայտում տվյալ միջոցառման իրական արդյունավետությունն ամբողջությամբ։ Որպես լրիվ արդյունավետության ցուցանիշի օրինակ կարող է ծառայել ձեռնարկությունում արտադրանքի ծավալի հարաբերությունն աշխատանքային և նյութական բոլոր ծախսումներին, իսկ մասնակի արդյունավետության ցուցանիշներից լայն կիրառություն են ստացել, օրինակ, կենդանի աշխատանքի արտադրողականության, ֆոնդահատույցի, էներգատարության և այլ ցուցանիշներ։ Ինչ խոսք, որ հանրային արտադրության արդյունավետության գնահատման համար առավել օգտակար են լրիվ արդյունավետության ցուցանիշները, որոնց ճիշտ որոշումը սակայն լուրջ դժվարությունների հետ է կապված։

Ըստ ծախսումների ընդգրկման, կարելի է տարբերել նաև լրիվ ծախսերի և դրանց աճի արդյունավետության ցուցանիշները։ Եթե որպես ծախսեր վերցնենք, օրինակ, հիմնական ֆոնդերը, ապա առաջին տիպի ցուցանիշները ցույց կտան գոյություն ունեցող բոլոր հիմնական ֆոնդերի արդյունավետությունը (ասենք, միջին ֆոնդահատույցը), անկախ դրանց գործարկման ժամանակից, իսկ երկրորդ տիպի ցուցանիշները հնարավորություն են ընձեռում կարծիք կազմելու նոր շարք մտած ֆոնդերի արդյունավետության մասին (նոր ֆոնդերի ֆոնդահատույցը), ուստի դրանք հաճախ անվանվում են աճային կամ դիֆերենցիալ արդյունավետության ցուցանիշներ։ Դրանց օգտագործումը մասնավորապես օգտակար է տեխնիկայի առաջընթացի արդյունավետությունը որոշելու համար։

Ըստ որում, եթե ամբողջ ծախսումների արդյունավետությունն աճում է (կամ նվազում), ապա դիֆերենցիալ արդյունավետության ցուցանիշներն այդ միջին մակարդակից բարձր են (ցածր են) և նոր տեխնիկան արտադրիչների նկատմամբ ավելի (պակաս) արդյունավետ է: Օրինակ, 1974 թ. ՍՍՀՄ արդյունաբերությունում ամբողջ հիմնական ֆոնդերի համար ֆոնդահատույցը կազմել է մոտ 1,5 ռուբլի, իսկ այդ տարում ֆոնդերի աճի համար այն ավելի ցածր է՝ 1,3 ռուբլի, այսինքն՝ նոր ֆոնդերի արդյունավետությունը հների համեմատությամբ ցածր է: Բայց դա չի նշանակում, թե հանրային արտադրության արդյունավետությունը նվազել է, քանի որ նոր ֆոնդերի գործարկումը հանգեցրել է այլ ցուցանիշների, հիմնականում աշխատանքի արտադրողականության աճին: Եվ իսկապես, 1974 թ. ՍՍՀՄ արդյունաբերությունում մեկ աշխատողի տարեկան միջին արտադրողականությունը կազմել է 15,7 հազար ռուբլի, իսկ եթե նույն թվականի արտադրության աճը վերագրվի աշխատողների թվի աճին, ապա դիֆերենցիալ արդյունավետության ցուցանիշը կկազմի ավելի քան 70 հազար ռուբլի: Հասկանալի է, որ այդ մեծությունն ապահովվել է նոր, ավելի արտադրողական ֆոնդերի գործարկման շնորհիվ: Բերված օրինակը միաժամանակ ցույց է տալիս, որ մասնակի ցուցանիշները բավարար չեն ծախսումների լրիվ արդյունավետությունը գնահատելու համար, ինչպես դա նշվեց վերը:

Օգտակար է արդյունավետության ցուցանիշների համակարգի տրոհումը լոկալ (տեղային) և գլոբալ (ժողովրդատնտեսական) ցուցանիշների: Դրանց տնտեսական էությունը, մեր կարծիքով, պետք է հասկանալ հետևյալ կերպ: Տնտեսվարման յուրաքանչյուր օղակում իրագործվող տեխնիկատնտեսական որևէ միջոցառման ազդեցությունը կարող է սահմանափակվել տվյալ օղակով, կամ տարածվել նաև ժողովրդական տնտեսության այլ օղակների վրա: Համապատասխանաբար կարելի է պայմանականորեն տարբերել տեղական կամ ժողովրդատնտեսական նշանակություն ունեցող միջոցառումներ: Այս բաժանումը որոշ պայմանականություն ունի այն առումով, որ որևէ միջոցառման ազդեցությունը կարող է տարածվել տվյալ օղակից (օրինակ՝ ձեռնարկությունից) դուրս, այսինքն համարվել ոչ լոկալ, այլ ժողովրդատնտեսական միջոցառում, սակայն սահմանափակվել հաջորդ ավելի բարձր մակարդակով օղակի (օրինակ՝ մինիստրության) սահմաններով, դառնալ այդ մակարդակի համար լոկալ միջոցառում: Ժողովրդատնտեսական նշանակությունն այստեղ զուտ համեմատական է միայն տվյալ օղակի նկատմամբ: Այդպիսի միջոցառման ազդեցությունը կարող է չտարածվել ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի վրա, այլ սահմանափակվել դրա մի որևէ ոչ մեծ ոլորտով, որի համար էլ այն կլինի լոկալ:

Հասկանալի է, որ որևէ միջոցառման նպատակահարմարությունը որոշելիս անհրաժեշտ է հաշվի առնել դրա իրագործման հետ կապված տնտեսության այլ օղակներում սպասվող ծախսերը և արդյունքը: Պայմանավորված վերջիների հաշվառման ընդգրկումով կարելի է տարբերել լոկալ և գլոբալ արդյունավետության ցուցանիշներ: Յուրաքանչյուր օղակի համար լոկալ արդյունավետությունը սահմանափակվում է տվյալ օղակում ծախսերի և արդյունքի համադրությամբ, իսկ եթե նկատի է առնվում նաև մնացած այլ օղակներում փոփոխությունները, ցուցանիշը դառնում է գլոբալ: Պետք է նկատի ունենալ, որ տվյալ օղակի համար գլոբալ ցուցանիշը կարող է հաջորդ, ավելի բարձր մակարդակի օղակի համար դառնալ լոկալ, եթե միջոցառման ազդեցությունը դրա սահմաններից դուրս չի անցնում: Այս առումով լոկալ և գլոբալ անվանումները, այստեղ ևս, ինչպես նշվեց վերևում, որոշ պայմանականություն են պարունակում: Հետո, հնարավոր է, որ տվյալ օղակի համար միջոցառումը գլոբալ է, դրա ազդեցությունը տարածվում է նաև այլ օղակների վրա, սակայն որոշվում է դրա լոկալ արդյունավետությունը, որում արտացոլված են միայն տվյալ օղակում ծախսերը և արդյունքը: Այս տեսակետից միջոցառումների դասակարգումը լոկալ և գլոբալի տարբերվում է արդյունավետության նման դասակարգումից: Սակայն, որտեղ այդ հնարավոր է, նպատակահարմար է գլոբալ միջոցառման համար որոշել հենց գլոբալ արդյունավետությունը: Բացի դա, Թյուրի-



մացությունից խուսափելու համար հարկավոր է յուրաքանչյուր անգամ նշել
թե ո՛ր մակարդակով, ինչպիսի՛ ընդգրկումով է որոշված արդյունավետության
ցուցանիշը:
Նշված դասակարգումը չպետք է շփոթել արդյունավետության ցուցանիշ-
ների՝ ըստ տնտեսվարման մակարդակների կամ ըստ տերիտորիալ բաժանման
դասակարգման հետ: Օրինակ, մինիստրության մակարդակով արդյունավետու-
թյան ցուցանիշը ներկայացնում է տվյալ մինիստրության համակարգում որևէ
տիպի ծախսումների (օրինակ, արտադրական լրիվ ծախսերի, կամ նոր տեխնի-
կայի ներդրման հետ կապված ծախսերի) արդյունավետությունը, իսկ մի-
նիստրության մասշտաբով լոկալ արդյունավետության ցուցանիշը ներկայաց-
նում է որևէ միջոցառման՝ տվյալ մինիստրության սահմաններում եղած ծախ-
սերի և արդյունքի համադրությունը: Երկու տիպի դասակարգումներն էլ օգտա-
կար են, անհրաժեշտ և ունեն ինքնուրույն նշանակություն հանրային արտա-
դրության արդյունավետության գնահատման և վերլուծության գործում:
Վերջապես մի կարևոր դասակարգում ևս: Տնտեսագիտական գրականու-
թյան մեջ վաղուց արդեն օգտագործվում են կապիտալ ներդրումների բացար-
ձակ և համեմատական արդյունավետության ցուցանիշներ, ըստ որում, որպես
բացարձակ արդյունավետության ցուցանիշ ընդունված է ազգային եկամուտի
(զուտ արդյունքի) աճի կամ շահույթի հարաբերությունը կապիտալ ներդրում-
ներին, իսկ համեմատական արդյունավետության ցուցանիշը ներկայացվում է
երկու տարբերակներում՝ արդյունքի ինքնարժեքների տարբերության և կապիտալ
ներդրումների տարբերության հարաբերության ձևով: Ցուցանիշների այսպիսի
բաժանումը, չնայած իր լայն տարածմանը, թերի է: Նախ, այն օգտագործվում
է միայն կապիտալ ներդրումների համար, հետո, գրականության մեջ տրված չէ
այդպիսի բաժանման մեթոդական հիմքը: Մեր կարծիքով, այդ բաժանումը
պետք է տարածել ցանկացած տեսակի ծախսումների վրա և ընդհանուր դեպ-
քում բնորոշել հետևյալ կերպ. բացարձակ արդյունավետությունը որոշվում է
ծախսումների որևէ տարբերակի համար այդ ծախսումների և դրանց արդյունքի
հարաբերությամբ, անկախ այլ տարբերակների առկայությունից, և ներկայաց-
նում է լրիվ ծախսումների միավորի հաշվով ստացվող արդյունքը (կամ դրա
հակադարձ մեծությունը): Համեմատական արդյունավետությունը որոշվում է
երկու փոխադարձաբար փոխարինելի տարբերակների ծախսումների տարբե-
րության և դրանց արդյունքների տարբերության հարաբերությամբ, այն
ենթադրում է տվյալ միջոցառման իրագործման մեկից ավելի տարբե-
րակների գոյություն և ներկայացնում է լրացուցիչ ծախսումների միա-
վորի հաշվով ստացվող արդյունք (կամ դրա հակադարձ մեծությունը): Առա-
ջարկվող բնորոշումից կարելի է անել մի շատ կարևոր հետևություն, որ համե-
մատական արդյունավետության ցուցանիշը միայն կապիտալ ներդրումների
համար չէ և ոչ էլ որոշվում է միայն ինքնարժեքի իջեցումով, այլ համակարգի
ցանկացած բացարձակ արդյունավետության ցուցանիշ, անկախ ծախսումների
և դրանց արդյունքի տիպից, ունի համապատասխան համեմատական արդյու-
նավետության ցուցանիշ: Այսպիսի ընդհանրացումը հնարավորություն է ըն-
ձեռում անելու մի այլ կարևոր հետևություն ևս, որ համեմատական արդյու-
նավետության նորմատիվը, որն այժմ ընդունված է հավասար 0,12-ի,
միակը չէ, կախված ծախսումների և դրանց արդյունքի տիպից՝ կունենանք
տարբեր նորմատիվներ:

Արդյունավետության տեսության ամենից ավելի վիճելի հարցերից մեկը, որին նվիրված էր «Вопросы экономики» հանդեսի էջերում 1974 և 1975 թվականներին անցկացված բանավեճը, արդյունավետության չափանիշի հարցն է: Բանավեճի ընթացքում և դրանից առաջ տնտեսագիտական գրականության մեջ արդյունավետության չափանիշի անհրաժեշտության, տնտեսագիտական բովանդակության, միասնական լինելու, արտահայտման ձևերի և օգտագործման ոլորտների մասին հայտնված են բազմապիսի կարծիքներ: Հոդվածի հնարավորությունները թույլ չեն տալիս վերլուծելու այդ հաճախ հակասական կարծիքները, ուստի կշարադրենք միայն մեր մոտեցումը հարցի լուծմանը,

հետաքրքրվողներին առաջարկելով ծանոթանալ բանավեճի հոդվածներին և ակադ. Տ. Խաչատուրովի ամփոփող ելույթին։

Արդյունավետության չափանիշի անհրաժեշտությունն առաջանում է նրանից, որ դրա ցուցանիշների համակարգը հնարավորություն չի ընձեռում համեմատելու նույն միջոցառման իրագործմանն ուղղված տարբեր ծախսումների (միջոցառման տարբերակների) արդյունավետությունը միարժեք ձևով և ընտրելու դրանցից լավագույնը։ Այդ նպատակի համար անհրաժեշտ է մեկ որոշիչ, արդյունավետությունը հիմնականում գնահատելու ամենից ավելի ընդհանուր և կարևոր ցուցանիշ, որում անմիջականորեն պետք է արտահայտվեն տվյալ ծախսումների հիմնական նպատակը, այն արդյունքը, որի ստացման համար էլ հենց կատարվել են տվյալ ծախսումները։ Այդ ցուցանիշը, այսինքն արդյունավետության չափանիշը, իր էությամբ համընկնում է արդյունավետության գլխավոր ցուցանիշի հետ, որում որպես արդյունք վերցվում է տվյալ ծախսումների նպատակը։ Հիմք ընդունելով ասվածը, արդյունավետության չափանիշի վերաբերյալ կարելի է անել մի շարք կարևոր տեսական հետևություններ։

Նախ, արդյունավետության չափանիշը չի բացառում ցուցանիշների համակարգը, գոյություն չունի վերջինից դուրս և չի փոխարինում դրան, այլ այդ համակարգի ցուցանիշներից ամենակարևորն է, քանի որ բնորոշում է արդյունավետության հիմնական կողմը, այն արդյունքը, որի ստացումը տվյալ ծախսումների նպատակն է։ Եթե նպատակները մի քանիսն են, անհրաժեշտ է դրանք սինթետիկ ձևով արտահայտել կամ դրանցից ընտրել առավել կարևորը։ Այլ տեսակի արդյունքները կազմում են ցուցանիշներ, որոնք տվյալ ծախսումների արդյունավետության գնահատման գործում ունեն երկրորդական նշանակություն, դրանով իսկ օժանդակ ցուցանիշներ են։

Երկրորդ, եթե արդյունավետության չափանիշը ցուցանիշներից մեկն է, ապա դրա նկատմամբ կիրառելի է ցուցանիշների վերը շարադրված դասակարգումը։ Իսկ դա նշանակում է, որ արդյունավետության չափանիշը կարելի է արտահայտել որպես հիմնական արդյունքի առնչությունը ծախսերին կամ հակադարձը՝ ծախսերի առնչությունը հիմնական արդյունքին։ Բացի դա, կարելի է տարբերել ամբողջ ծախսումների և դրանց աճի, լոկալ և գլոբալ, բացարձակ և համեմատական արդյունավետության չափանիշներ։ Դրանցից յուրաքանչյուրն ունի իր առանձնահատկությունները, որը բացատրված է վերը՝ համապատասխան ցուցանիշների նկարագրության ժամանակ։ Այս դասակարգումը շատ կարևոր է, քանի որ տեսական հիմք է ստեղծում չափանիշների կազմման և դրանց օգտագործման սահմանները որոշելու համար։

Երրորդ, արդյունքի և ծախսումների միջև պետք է լինի համապատասխանություն, այսինքն, որոշակի արդյունքը պետք է առնչել միայն այն ծախսերին, որոնց միջոցով այն ստացվել է. և, հակառակը, տվյալ ծախսերի համար վերցվում է միայն այն արդյունքը, որի ստացումը դրանք ապահովել են։ Դա նշանակում է, որ չափանիշը պետք է լինի լրիվ արդյունավետության ցուցանիշ։ Մասնակի արդյունավետության չափանիշը կարելի է օգտագործել միայն պայմանականորեն և կամ անհրաժեշտ է ճշտորեն որոշել արդյունքի այն մասը, որի ստացումը ապահովվել է ծախսումների ուսումնասիրվող մասի շնորհիվ։

Չորրորդ, եթե արդյունավետության չափանիշում արդյունքը պայմանավորված է տվյալ ծախսումների նպատակով, կարելի է պատկերացնել տարբեր չափանիշներ, քանի որ արտադրության ծախսումների նպատակը տարբեր տեղերում և տարբեր ժամանակաշրջաններում կարող է տարբեր լինել, ինչպես օրինակ արտադրանքի ծավալի ավելացում (դրա սուր պակասի դեպքում), կենդանի աշխատանքի խնայողություն (առողջության համար վտանգավոր արտադրություններում կամ բնական հարստությունների յուրացման նպատակով դեռ չբնակեցված շրջաններում), որակի բարձրացում (երբ արտադրանքի ծավալը բավարար է, սակայն որակը չի համապատասխանում պահանջներին) և այլն։ Այստեղից հետևում է, որ հիմնավոր չէ այն կարծիքը, որ արդյունավետության չափանիշը միակն է բոլոր ծախսումների համար տնտեսության բոլոր աստիճաններում և բոլոր ժամանակաշրջաններում։ Որոշակի ծախսում-



ների համար այն ստանում է իր կոնկրետ արտահայտությունը պայմանավորված ծախսումների նպատակով։ Սակայն հնարավոր է, որ ծախսումների մեծ մասը տվյալ ժամանակաշրջանում ունենա մի միասնական նպատակ և այդ դեպքում դրանց (և միայն դրանց) համար կունենանք այդ նպատակով պայմանավորված միասնական չափանիշ։ Ամբողջ հարցը այդ չափանիշի ճիշտ կազմումն է, քանի որ այն հիմք պետք է հանդիսանա օպտիմալության չափանիշի, այսինքն լավագույն տարբերակի ճիշտ ընտրության համար։ Իսկ այդ նպատակով, ինչպես հետևում է վերը շարադրածից, անհրաժեշտ է ճիշտ արտահայտել ծախսումները և դրանց արդյունքը։ Քննարկենք այդ մեծությունները։

Հանրային արտադրության նպատակը սոցիալիզմի օրոք պայմանավորված է սոցիալիզմի հիմնական տնտեսական օրենքով և դրսևորում է մարդկանց նյութական ու կուլտուրական պահանջմունքների առավել լրիվ բավարարումը։ Այս դրույթը, որը որոշակիորեն նշվեց ՍՄԿԿ համագումարում, անվիճելի է և ընդունվում է համարյա բոլոր տնտեսագետների կողմից։ Հարցն այն է, թե ի՞նչ ձևով է արտահայտվում դա։ Մեծամասնությունը կողմնակից է արտադրության արդյունքն ազգային եկամտի (զուտ արդյունքի) միջոցով արտահայտման։ Կան առաջարկություններ, որ արտադրության անմիջական արդյունքն արտադրանքն է, ուստի այն պետք է արտահայտել համախառն արտադրանքի ձևով, իսկ ոմանք կարծում են, որ ավելի ճիշտ է այդ նպատակի համար օգտագործել վերջնական արտադրանքը։ Քիչ չեն նաև հավելյալ արդյունքի կամ դրա մի մասի՝ շահույթի կողմնակիցները։

Մենք կողմնակից ենք վերջնական արտադրանքին, քանի որ դա արտադրության անմիջական արդյունքն է, որն սպառվում է և զերծ է կրկնվող հաշվարկման սխալներից, ինչը հատուկ է համախառն արտադրանքին։ Յուրաքանչյուր մակարդակում հենց վերջնական արտադրանքն է ծառայում անձնական և հասարակական պահանջմունքների բավարարմանը, ուստի այն արտադրության նպատակն է, և դրա արտացոլումը արտադրության ծախսերի արդյունավետության չափանիշում ամենից ավելի հիմնավոր է։

Տարաձայնություններ կան տնտեսագետների շրջանում՝ ծախսումների արտահայտման հարցում։ Առաջարկները շատ են, սակայն ընդունելի լուծում դեռ չի հաջողվել գտնել։ Դժվարությունն այն է, որ արդյունավետության չափանիշում անհրաժեշտ է արտացոլել արդյունքի ստացման համար կատարված բոլոր՝ ինչպես միանվագ, այնպես էլ ընթացիկ ծախսերը, սակայն տարբեր չափողականության պատճառով դրանք ուղղակի գումարել չի կարելի, իսկ դրանց համեմատելի դարձնելու փորձերը դեռ հաջողությամբ չեն պսակվել (տե՛ս «Հայաստանի ժողովրդական տնտեսություն» ամսագիր, 1976 թ., № 4)։

Արդյունավետության չափանիշի բանաձևում տարբեր ծախսումների համատեղ հաշվառման հարցը լուծելիս, ելել ենք արտադրության անընդհատության փաստից, այն հանգամանքից, որ հասարակության պահանջմունքների անընդհատությունը պայմանավորում է նաև արտադրության բազմակի կրկնողություն։ Սակայն վերարտադրության համար անհրաժեշտ է արտադրական ռեսուրսների առկայություն, ուստի յուրաքանչյուր արտադրական ժամանակաշրջանում դրանց սպառումը պետք է կոմպենսացվի, ռեսուրսները պետք է վերականգնվեն իրենց նախկին՝ տվյալ արտադրության պահանջներով պայմանավորված ծավալով։ Դա կատարվում է ստացված արդյունքի՝ արտադրանքի իրացումից առաջացող միջոցների հաշվին, որի հետևանքով այն փոքրանում է հատուցման ֆոնդի չափով։ Բայց ստացված արդյունքի՝ վերջնական արտադրանքի արժեքից հանելով արտադրածախսերը, դրանով իսկ արդյունավետության չափանիշում, միանվագ ծախսումներից բացի, հաշվի ենք առնում նաև ընթացիկ ծախսերը։ Այսպիսով, ներկա փուլում և հետագա զգալի ժամանակաշրջանում արտադրածախսումների ճնշող մեծամասնության համար որպես արդյունավետության չափանիշ կարող է ծառայել հավելյալ արդյունքի հարաբերությունն արտադրական ռեսուրսներին, քանի որ այն ընդհանրացնող ցուցանիշ է, որում միաժամանակ հաշվի են առնվում արտադրության հիմնական բնութագրերը՝ արտադրածավալը, որակը և արտադրության լրիվ ծախքերը։

# ԽՐԱԽՈՒՍՄԱՆ ՖՈՆԴԸ ՆԵՐԳՈՐԾԱՐԱՆԱՅԻՆ ՏՆՏՀԱՇՎԱՐԿԻ ՊԱՅՄԱՆՆԵՐՈՒՄ*

**Վ. Մ. ԲԱՂՅԱՆ**
Տնտեսագիտության թեկնածու

ՏՆՏՀԱՇՎԱՐԿԸ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ տնտեսական օրենքների օգտագործման հիման վրա տնտեսությունը պլանային ձևով վարելու մեթոդ է, որը նպաստում է ձեռնարկության գործունեության արդյունքների համար արտադրության բոլոր օղակների նյութական շահագրգռության և պատասխանատվության բարձրացմանը։

Երկար ժամանակ, մինչև տնտեսական ռեֆորմը, մեր հանրապետության սննդարդյունաբերության ձեռնարկություններում տնտհաշվարկը գրեթե ձևական էր, թույլ էր ձեռնարկության ղեկավարների ու ամբողջ կոլեկտիվի նյութական պատասխանատվությունը։ Արտադրության տնտեսական խթանման և աշխատողների նյութական խրախուսման գործող համակարգը չէր ապահովում տնտհաշվարկային օղակների և ձեռնարկության ողջ կոլեկտիվի շահագրգռությունը՝ լարված պլանների մշակման ու ընդունման, արտադրական հիմնական ֆոնդերի ու շրջանառու միջոցների օգտագործման համար։ Ինչպես տնտհաշվարկային օղակներում, այնպես էլ ձեռնարկություններում թերագնահատվում էր պարգևատրման դերը, այն վճարվում էր հիմնականում քանակական ցուցանիշների կատարման դեպքում, որոնց մեծ մասը, երբեմն, կապված չէր այս կամ այն օղակի ինժեներա-տեխնիկական աշխատողների գործունեության հետ։ Արտադրամասային ինժեներա-տեխնիկական աշխատողներն ու ծառայողները պարգևատրվում էին ո՛չ թե արտադրամասի, այլ ձեռնարկության աշխատանքի ընդհանուր արդյունքների համար, որը չէր խթանում արտադրամասի գործունեության բարելավմանը։ Այս բոլորը պակասեցնում էր պարգևատրման չափը և դրա ստացման հնարավորությունները։

Այսպես, տնտեսական ռեֆորմին նախորդող տարում վճարված ընթացիկ պարգևը Երևանի ծխախոտի փորձարարական, ձեթ-օճառ, գինու, հրուշակեղենի-մակարոնի, հացաբուլկեղենի կոմբինատներում համապատասխանաբար կազմել է արտադրա-արդյունաբերական անձնակազմի տարիֆային (հաստիքային) աշխատավարձի 6, 14,8, 6,7, 6,6, 11,8 տոկոս։ Հացի № 1, գարեջրի, ոչ ալկոհոլային խմիչքների, շամպայն գինիների, ծխախոտի ֆերմենտացիոն գործարաններում համապատասխանաբար՝ 13,1, 6,7, 12,1, 8,4, 10,3, ՀՍՍՀ սննդարդյունաբերության մինիստրության մասշտաբով՝ 7,1 տոկոս։ Մասնավորապես ցածր էր աշխատողների կոլեկտիվ շահերի խթանման համար տրվող պարգևը, որը ՍՍՀՄ արդյունաբերության մեջ 1963—64 թթ. ամսական կազմել է 2 ռուբլուց պակաս, մեր հանրապետությունում՝ 1 ռուբլի։

Ներգործարանային տնտհաշվարկի զարգացման համար լայն հնարավորություններ ստեղծվեցին տնտեսական ռեֆորմից հետո։ Այժմ տնտեսական գործունեության ցուցանիշների և առաջադրանքների մի մասը մշակում է ինքը՝

* Տպագրվում է առաջարկության կարգով. Խմբ.։



ձեռնարկությունը, յուրաքանչյուր արտադրամասի համար սահմանում պլանային առաջադրանքներ, որոնք բխում են տվյալ արտադրամասի առջև դրված կոնկրետ խնդիրներից։ Ձեռնարկությունների իրավունքներն առանձնապես ընդլայնվել են պարգևատրման կանոնադրությունների մշակման ու կիրառման ասպարեզում։ Ելնելով իր առջև դրված կոնկրետ խնդիրներից ու առանձնահատկություններից, ձեռնարկությունն է որոշում պարգևատրման ենթակա բանվորական պրոֆեսիաներն ու խմբերը, սահմանում ցուցանիշներ և պայմաններ ու դրանք շերտավորում ըստ աշխատողների առանձին խմբերի։ Միաժամանակ սահմանվում են պարգևի կոնկրետ չափեր, որի նպատակն է ճիշտ արտահայտել կոլեկտիվների և նրանց առանձին անդամների աշխատանքային ծախսումների քանակն ու որակը։

Պարգևատրման գործող տիպային կանոնադրությունը, նախկինի համեմատությամբ, ունի նշանակալի առավելություններ. ողջ կոլեկտիվի և նրա առանձին անդամների համար ստեղծում է շահագրգռություն իրենց աշխատանքի արդյունքների նկատմամբ, քանի որ առաջադրանքը կատարելու դեպքում յուրաքանչյուր կատեգորիայի աշխատողների պարգևատրումը երաշխավորվում է անկախ մյուս աշխատողների առաջադրանքների կատարման աստիճանից։

Կարևոր փոփոխություններ են կատարվել ինժեներա-տեխնիկական աշխատողների ու ծառայողների պարգևատրման կազմակերպման գործում։

Պարգևատրման հիմնական աղբյուրը շահույթի հաշվին ստեղծվող նյութական խրախուսման ֆոնդն է։ Պարգևի չափերը սահմանափակում չունեն, ինչպես նախկինում, այն պայմանավորված է նյութական խրախուսման ֆոնդի մեծությունից, այսինքն՝ նյութական խրախուսումը կախվածության մեջ է դրվում ստացած շահույթից և տնտեսական գործունեության մյուս արդյունքներից։ Այսպիսով, տնտհաշվարկի կիրառման գործում կատարվել են որոշակի դրական փոփոխություններ։

Սննդի արդյունաբերության բոլոր ձեռնարկություններն աշխատում են տնտհաշվարկային սիստեմով, սակայն, ինչպես ցույց են տալիս ուսումնասիրությունները, դրանց արտադրամասերում, տեղամասերում, առանձին ծառայություններում, ներգործարանային տնտհաշվարկ չի իրականացվում կամ այն մեծ մասամբ կրում է ձևական բնույթ։ Հիմնական արտադրամասերում ինքնարժեքի առաջադրանքը սահմանվում է ծախսումների միայն առանձին տարրերի առումով՝ հումքի, նյութերի արժեքի, աշխատավարձի ֆոնդի և այլն։ Չի հաշվարկվում հատկապես օժանդակ ծառայությունների աշխատանքի արժեքը։

Բացի ծխախոտի փորձարարական, գինու, հրուշակեղենի-մակարոնի և ձեթ-օճառ կոմբինատներից, արտադրամասերի համար աշխատավարձի ֆոնդը չի պլանավորվում։ Բոլոր ձեռնարկություններում նյութական խրախուսման ֆոնդը նախօրոք չի բաշխվում արտադրամասերի միջև. ոչ ալկոհոլային խմիչքների գործարանում այդ ֆոնդից պարգևատրվում է բանվորների միայն 30 տոկոսը, հրուշակեղենի-մակարոնի կոմբինատում՝ 14,5, գինու կոմբինատում՝ 28,3, հացաբուլկեղենի կոմբինատում՝ 11,2, պահածոների գործարանում՝ 10 տոկոսը։ Խրախուսման գործող համակարգը աշխատողներին չի շահագրգռում աշխատանքի արդյունքների բարելավման համար, նվազում է նյութական խրախուսման ֆոնդի խթանիչ նշանակությունը։

Երևանի հրուշակեղենի-մակարոնի և ձեթ-օճառ կոմբինատներում փորձ է արվել արմատավորելու ներգործարանային տնտհաշվարկը, սակայն որոշակի արդյունքներ դեռևս չկան։

Տնտհաշվարկի զարգացման ու ամրապնդման կարևոր խնդիրներից մեկը արտադրության աշխատողների նյութական խրախուսման համակարգի կատարելագործումն է։ Ուստի, դրա կիրառման գործնականությունը մեծ մասամբ պայմանավորված է տնտհաշվարկային օղակի աշխատողների խրախուսման գործող ձևերով։ Ինչպես արդեն նշվել է, նյութական խրախուսման ֆոնդը սննդի արդյունաբերության բոլոր ձեռնարկություններում օգտագործվում է կենտրոնացված կարգով։

Նյութական խրախուսման ֆոնդի հիմնական նպատակը ձեռնարկության

արտադրության արդյունավետության բարձրացման գործում ամբողջ կոլեկտիվի և նրա յուրաքանչյուր անդամի շահագրգռության ապահովումն է։ Հետևաբար, այն ճիշտ է օգտագործվում այն դեպքում, երբ դրա բաշխման սկզբունքները տարածվում են նաև արտադրամասերի և առանձին ստորաբաժանումների վրա։ Բանվորական տեղերում կատարված ուսումնասիրությունները վկայում են, որ նյութական խրախուսման ֆոնդից բանվորներին վճարվող ընթացիկ պարգևը չի տարբերվում աշխատավարձի ֆոնդից տրվող պարգևից, քանի որ նյութական խրախուսման ֆոնդը գոյանում է ոչ թե արտադրամասի, այլ ամբողջ ձեռնարկության աշխատանքի արդյունքների հիման վրա, որը և բանվորների մոտ անհրաժեշտ շահագրգռություն չի հարուցում ձեռնարկության աշխատանքի ընդհանուր արդյունքների բարելավման համար։

Ուստի, անհրաժեշտ է աշխատողների նյութական խրախուսումը կախվածության մեջ դնել յուրաքանչյուր արտադրամասի և բաժնի գործունեության գնահատման ցուցանիշներից, փոխադարձ կապ ստեղծելով ձեռնարկության արտադրամասերի տնտհաշվարկային ցուցանիշների և նյութական խրախուսման միջև։

Մեր կարծիքով, փոքր ձեռնարկություններում նպատակահարմար չէ արտադրամասերի միջև բաշխել նյութական խրախուսման ֆոնդը, քանի որ ոչ մեծ գումարի մասնատումը դժվարացնում է դրա արդյունավետ օգտագործումը։ Մինչդեռ խոշոր և միջին կարողության ձեռնարկություններում անհրաժեշտ է նյութական խրախուսման ֆոնդը բաշխել տնտհաշվարկային արտադրամասերի միջև։ Նյութական խրախուսման արտադրամասային ֆոնդի ստեղծումը և օգտագործումը հնարավորություն կընձեռի համեմատելու տարբեր արտադրամասերի ավանդը ձեռնարկության ընդհանուր արդյունքներում, ընդլայնելու արտադրամասի ղեկավարության և կազմակերպությունների իրավունքները, ստեղծելու տվյալ ծառայության աշխատողների աշխատանքի արդյունքների և վճարվող պարգևի չափերի փոխկապվածություն։ Այն կապահովի արտադրամասի աշխատողների պլանային առաջադրանքների կատարումը, գերակատարումն ու արտադրության արդյունավետության բարձրացումը։ Տասներորդ հնգամյակում նյութական խրախուսման ֆոնդերի համար կառանձնացվեն առավել շատ միջոցներ։ «Խնդիրն այն է, որ դրանք օգտագործվեն մեծ արդյունավետությամբ, որ յուրաքանչյուր ձեռնարկությունում և միավորումում դրանց չափերը ուղղակի կախման մեջ դրվեն արտադրության ինտենսիվության, աշխատանքի արտադրողականության բարձրացման, արտադրանքի որակի բարելավման, տեխնիկական առաջընթացի գործում ձեռք բերված արդյունքներից» (Ա. Ն. Կոսիգին, ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թթ. հիմնական ուղղությունները, էջ 38)։

Արտադրամասի նյութական խրախուսման ֆոնդի գոյացման աղբյուրը ևս շահույթն է, որի չափերը սահմանվում են այն նույն մեթոդներով, որոնք կիրառվում են ձեռնարկության նյութական խրախուսման ֆոնդի համար։

Իրականում ներգործարանային տնտհաշվարկով աշխատող ձեռնարկությունների մի մասի արտադրամասերի միջև բաշխվում են նյութական խրախուսման ֆոնդից բոլոր նպատակներով հատկացվող միջոցները, իսկ մի շարք ձեռնարկություններում՝ միայն ընթացիկ պարգևատրման ու տարեկան աշխատանքի արդյունքների խրախուսման, ավելի հաճախ, միայն ինժեներա-տեխնիկական աշխատողների ու ծառայողների ընթացիկ պարգևատրմանը հատկացվող միջոցները։

Մեր կարծիքով, տնտհաշվարկային արտադրամասերի միջև հարմար է նյութական խրախուսման ֆոնդից բաշխել միայն ընթացիկ պարգևատրման նպատակով հատկացվող միջոցները, իսկ մնացած մասը օգտագործել կենտրոնացված կարգով։ Դա բխում է հետևյալ առանձնահատկություններից. ձեռնարկությունների ղեկավարները, ունենալով որոշ չափով կենտրոնացված ֆոնդ, հնարավորություն կստանան գործարանային ընդհանուր առաջադրանքների կատարման համար խրախուսելու տարբեր արտադրամասերի աշխատողների։ Միշտ չէ, որ հնարավոր է տարվա սկզբում նախատեսել արտադրամասին տըր-



վող հատուկ կարևոր առաջադրանքները և այդ նպատակով պահանջվող միջոցները։

Կանոնադրությամբ տարեկան աշխատանքի արդյունքների համար վճարվող պարգևից լրիվ կամ մասնակիորեն զրկվում են գործալիքները, աշխատանքային կարգապահության սիստեմատիկ խախտողները, իրենց նախաձեռնությամբ աշխատանքից ազատվողները և այլն։ Հնարավոր չէ նախատեսել, թե տարվա վերջում տվյալ արտադրամասում որքան մարդիկ չեն պարգևատրվի, ուստի հավասար պայմաններում նույն որակավորումը և ստաժն ունեցող աշխատողը մի արտադրամասում կարող է ավելին ստանալ (որովհետև իրենց արտադրամասում պարգևից զրկվողների տեսակարար կշիռն ավելի մեծ է), իսկ մյուսում՝ քիչ։ Օգնության նպատակով հատկացվող միջոցների մի մասը տարվա ընթացքում բաշխվում է հիվանդությունների և դժբախտ դեպքերի ժամանակ, որը հնարավոր չէ պլանավորել։ Հետևաբար, այդ նպատակով նյութական խրախուսման ֆոնդից հատկացվող միջոցների նախօրոք բաշխումն արտադրամասերի միջև չի կարող արդյունավետ լինել։

Ներգործարանային տնտհաշվարկի կարևոր խնդիրներից է այն չափանիշի ընտրությունը, որի համապատասխան տնտհաշվարկային օղակների միջև բաշխվում է նյութական խրախուսման ֆոնդը։ Գործնականում կիրառվում է այդ ֆոնդի բաշխման երկու մեթոդ. մի դեպքում այն տրվում է ըստ յուրաքանչյուր արտադրամասի շահույթի, մյուս դեպքում՝ արտադրամասի աշխատավարձի ֆոնդի։

Սննդի արդյունաբերության ձեռնարկություններում շահույթի ավելացումը երբեմն կապված է ավելի էժան հումքի օգտագործման կամ տեսականու փոփոխության հետ, որի վրա կոլեկտիվը ոչ մի ազդեցություն չի գործում։ Այստեղից էլ՝ նպատակահարմար է արտադրամասերի համար նյութական խրախուսման ֆոնդի միջոցները սահմանել ոչ թե ստացած շահույթի, այլ աշխատավարձի ֆոնդի հիման վրա։

Նյութական խրախուսման ֆոնդի հատկացումների նորմատիվները յուրաքանչյուր ձեռնարկությունում անհրաժեշտ է հաշվարկել տարին մեկ անգամ։ Ներգործարանային տնտհաշվարկի անցման առաջին տարում այդ նորմատիվների որոշման համար հարկ է կիրառել նախորդ տարվա նյութական խրախուսման ֆոնդի օգտագործման նախահաշիվը։ Այսպիսով, նախորդ տարվա տվյալների հիման վրա նպատակահարմար է հաշվարկել նյութական խրախուսման ֆոնդի կենտրոնացված մասը, իսկ մնացածը՝ հատկացնել ընթացիկ պարգևատրմանը։ Արտադրամասի նյութական խրախուսման ֆոնդի պլանային չափը պետք է սահմանել՝ ելնելով ինժեներա-տեխնիկական աշխատողների, ծառայողների և բանվորների խրախուսման ֆոնդից, գործող կանոնադրությամբ վճարվող ընթացիկ պարգևի չափերից։

Նյութական խրախուսման ֆոնդի չափերը ներկայումս որոշվում են արտադրանքի իրացման ծավալի, շահույթի չափերի և շահութաբերության մակարդակի պլանային առաջադրանքներով, առանց հաշվի առնելու պլանային առաջադրանքների լարվածության աստիճանը, իսկ դա աշխատողների մոտ անհրաժեշտ շահագրգռություն չի ստեղծում արտադրական ռեզերվներն առավելագույն չափով օգտագործելու համար։ Մեր կարծիքով, ավելի բարձր պլանային առաջադրանքներ ստանձնելու համար, արտադրամասերի կոլեկտիվների նյութական շահագրգռությունը բարձրացնելու նպատակով անհրաժեշտ է ամեն տարի նյութական խրախուսման պլանային ֆոնդը բաշխել արտադրամասերի միջև, ելնելով տվյալ տարվա պլանային առաջադրանքների լարվածության աստիճանից։ ՍՄԿԿ XXV համագումարն առանձնապես շեշտեց, որ անհրաժեշտ է «Բարձրացնել միավորումների, ձեռնարկությունների և կառույցների կոլեկտիվների շահագրգռությունը այնպիսի պլանների մշակման և կատարման գործում, որոնք առավել լրիվ են հաշվի առնում արտադրության հնարավորություններն ու ռեզերվները» (ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղությունները, էջ 24—25)։

Տնտհաշվարկի կիրառման գործում բանվորների նյութական շահագրգռու-

թյան ապահովումը պայմանավորված է պարգևի չափերի մեծությամբ, տարբեր արտադրամասերի և տեղամասերի միջև դրա շերտավորման աստիճանով և արտադրանքի որակի ու մյուս ցուցանիշների լարվածության աստիճանի վրա նրա ազդեցությամբ: Պարգևի չափերը սահմանվում են սանդղակի հիման վրա, որը պարգևատրման համակարգի կարևոր տարրերից է, այն հնարավորություն է ընձեռում պարգևի մեծությունը շաղկապել ցուցանիշների կատարման աստիճանի հետ: Եթե սահմանված ցուցանիշների կատարումը պահանջում է աշխատանքի մեծ ծախսումներ, իսկ նախատեսված են պարգևի ցածր չափեր, նշանակում է չկա շահագրգռություն սահմանված արդյունքների ձեռք բերման համար: Եթե ցուցանիշների կատարումը մեծ ջանքեր չեն պահանջում, իսկ պարգևի չափերը բարձր են, նշանակում է այն չի կարող խթանել բարձր արդյունքների ձեռքբերմանը: Սակայն ուսումնասիրությունները վկայում են, որ առանձին ձեռնարկությունների պարգևատրման կանոնադրություններում սահմանվում են տիպայինով նախատեսված պարգևի մաքսիմալ չափեր՝ հաշվի չառնելով տվյալ արտադրամասի պայմանները: Ծխախոտի փորձարարական կոմբինատում հիմնական արտադրամասերի բանվորներին պարգևը վճարվում է տեխնիկապես հիմնավորված նորմաների, իսկ պահածոների գործարաններում՝ փորձա-վիճակագրական նորմաների գերակատարման համար:

Այսպիսով, տարբեր ձեռնարկություններում բանվորների պարգևատրման համար սահմանված ցուցանիշներն ունեն հիմնավորվածության տարբեր աստիճան: Պարգևի չափերը սահմանվում են անկախ տվյալ ձեռնարկության համար այդ նպատակով նախատեսված միջոցներից:

Պարգևատրման ցուցանիշների և սանդղակի մշակման ժամանակ անհրաժեշտ է պարզել յուրաքանչյուր արտադրամասում և տեղամասում արտադրանքի քանակի ավելացման և դրա որակի բարձրացման համար սահմանված ցուցանիշների կատարման մակարդակը: Պարգևի կոնկրետ չափերը սահմանելիս, պետք է ելնել արտադրամասի ցուցանիշների մեծությունից: Անհրաժեշտ է պարգևի ավելի մեծ չափեր սահմանել ծխախոտի արտադրության, գինու, գարեջրի, հանքային ջրերի շշերի լցման, կոնֆետների և կարամելի արտադրության, ձեթ-օճառ կոմբինատում հիմնական տեխնոլոգիական սարքավորումները սպասարկող փականագործ-կարգավորողների համար, որոնց աշխատանքի բարդության աստիճանն ավելի բարձր է և անմիջապես ազդում է արտադրանքի քանակի ու որակի վրա: Պարգևի չափերը պետք է շերտավորել, ելնելով սահմանված ցուցանիշների հիմնավորվածության աստիճանից. եթե ցուցանիշը սահմանված է տիպային նորմաների կատարման համար, ապա պարգևը պետք է նախատեսել առավելագույն, իսկ տեղում մշակված նորմաների կատարման համար՝ նվազագույն չափով:

Տնտեսական հաշվարկի արդյունավետ կիրառման համար, աշխատողների նյութական շահագրգռության հետ միասին, կարևոր նշանակություն ունի անձնական պատասխանատվության բարձրացումը: ՍՄԿԿ ԿԿ-ի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի 1965 թ. հոկտեմբերի 4-ի որոշման մեջ ասված է, որ աշխատողների նյութական շահագրգռության սկզբունքը պետք է շաղկապել աշխատանքի արդյունքների համար նրանց նյութական պատասխանատվության հետ: Անհրաժեշտ է արտադրանքի որակի բարելավման համար վարձատրության ավելացման հետ մեկտեղ կրճատել վարձատրությունը՝ ցածրորակ և խոտան արտադրանքի համար:

ՍՄԿԿ XXV համագումարի փաստաթղթերում նշված է, որ անհրաժեշտ է «Ուժեղացնել տնտեսական խթանների դերը արտադրության արդյունավետության աճի, արտադրանքի որակի բարձրացման, գիտատեխնիկական առաջընթացի արագացման, ձեռնարկությունների համաչափ աշխատանքի ապահովման, աշխատանքային և նյութական ռեսուրսների օգտագործումը բարելավելու ասպարեզում» (նույն տեղը, էջ 24):

Ղեկավարվելով կուսակցության համագումարի որոշումներով, անհրաժեշտ է նյութական խթանման սիստեմը լրիվին ի սպաս դնել տասներորդ հնգամյա պլանը հաջողությամբ կատարելու նպատակին:



# ՍՄԿԿ-Ի ՏՆՏԵՍԱԿԱՆ ԵՎ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ

Վ. ԲՈՒԴԱՐԻՆ, Ն. ՔՐԻՍՏՈՍՏՈՒՐՅԱՆ

ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ ՏՆՏԵՍԱԿԱՆ և սոցիալական զարգացման միասնությունը, փոխպայմանավորվածությունը օբյեկտիվ օրինաչափություն է, որը հասարակական յուրաքանչյուր սիստեմում իրականացվում է նրա համար բնորոշ ձևերով: Սոցիալիզմի պայմաններում տնտեսական ու սոցիալական առաջընթացի առանձնահատկությունն այն է, որ դա իրականացվում է որպես գիտականորեն ճանաչված, գիտականորեն կառավարվող պրոցես, դառնում է կոմունիստական կուսակցության և սոցիալիստական պետության քաղաքականության առարկա, որը կազմում է մասսաների նպատակամղված գործունեության հիմքը: ՍՄԿԿ-ի տնտեսական և սոցիալական քաղաքականության միասնությունն արտացոլվում է տնտեսական և սոցիալական առաջընթացի կոմպլեքսային ծրագրերում: Տասներորդ հնգամյա պլանը, որը կուսակցության տնտեսական քաղաքականության և տնտեսական ստրատեգիայի, ՍՄԿԿ XXV համագումարի առաջադրած խնդիրների կոնկրետ մարմնավորումն է, նախատեսում է նոր, է՛լ ավելի խոշոր առաջընթաց քայլ հանրային արտադրության վերելքի, հասունացած սոցիալական պրոբլեմների լուծման գործում:

Սույն կոնսուլտացիայում քննության են առնվում հետևյալ հարցերը.

1. Էկոնոմիկայի առաջընթացը տասներորդ հնգամյակի սոցիալական ծրագրի հաջող իրագործման անհրաժեշտ պայմանն է:

2. Սոցիալական խնդիրների լուծումը հանրային արտադրության զարգացման կարևոր գործոն է:



Հասուն սոցիալիզմի պայմաններում, ինչպես հայտնի է, առավել հետևողականորեն ու լրիվ են իրականացվում սոցիալիստական կարգի առավելությունները, նրա զարգացման արմատական օրինաչափությունները: Նոր աստիճանի են բարձրանում արտադրողական ուժերը: Մեր երկրին այժմ բնորոշ է տնտեսական վիթխարի հզորությունը: Հիմնական արտադրաֆոնդերի մեծ չափեր, բազմաճյուղ սոցիալիստական ինդուստրիա, խոշոր սոցիալիստական գյուղատնտեսություն, զարգացած ինֆրակառուցվածք, առաջավոր գիտություն— ահա այդ հզորության նյութական հիմքը: Հասուն սոցիալիզմը դա արտադրա-

կան և հասարակական հարաբերությունների զգալիորեն ավելի բարձր մակարդակ է, դա բանվորների, կոլտնտեսականների, մտավորականների, տնտեսական ղեկավարների բարձրորակ կադրերի առկայություն է, աշխատավորների ընդհանուր և պրոֆեսիոնալ կուլտուրայի, նրանց քաղաքական գիտակցականության և սոցիալական ակտիվության նոր աստիճան:

Սոցիալիստական հասարակարգն այժմ ունի նոր հնարավորություններ տնտեսական ու սոցիալական առաջընթացի համար: Կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, նրա ռեալիստական քաղաքականության շնորհիվ տարեցտարի առավել լրիվ չափով են բացահայտվում ու իրականացվում այդ հնարավորությունները, աճում է սոցիալիստական սիստեմի դինամիզմը: Այժմ ստեղծվել ու շարունակ կատարելագործվում են ժողովրդի նյութական բարեկեցության և կուլտուրայի անշեղ վերելքի, սովետական մարդկանց աշխատանքի ու կենցաղի պայմանների բարելավման, բոլոր աշխատավորների՝ հասարակության գլխավոր արտադրողական ուժի ընդունակությունների համակողմանի զարգացման նախադրյալները:

Տասներորդ հնգամյակի բնորոշ առանձնահատկություններից մեկը սովետական էկոնոմիկայի զարգացման սոցիալական ուղղվածության ուժեղացումն է, որն արտահայտվում է ամենից առաջ սոցիալական զարգացման կոմպլեքսային ծրագրի վիթխարի մասշտաբների մեջ:

Հասկանալի է, որ այդ ծրագրի կատարումը պահանջում է ոչ քիչ միջոցներ: Իսկ ո՞րն է դրանց ապահովման աղբյուրը:

Աշխատավորների նյութական բարեկեցության և կուլտուրայի աճի, ընդլայնված սոցիալիստական վերարտադրության գլխավոր աղբյուրը եղել ու մնում է ազգային եկամուտը: Ինչպես հայտնի է, այդ եկամուտն ամբողջական հասարակական արդյունքի այն մասն է, որը մնում է արտադրության սպառված միջոցները հանելուց հետո: Այլ խոսքով, դա որոշակի ժամանակաընթացքում (սովորաբար՝ մեկ տարում) արտադրված մաքուր արդյունքն է կամ նոր ստեղծված արժեքը:

Սոցիալիստական հասարակարգին բնորոշ է մաքուր արդյունքի արագ աճը: Սպառման և կուտակման համար օգտագործված ազգային եկամտի տարեկան միջին մակարդակը 1961—1965 թթ. կազմել է 168 մլրդ ռուբլի, 1966—1970 թթ.՝ 233 մլրդ ռուբլի, 1971—1975 թթ.՝ 313 մլրդ ռուբլի: Ազգային եկամտի աճը ութերորդ հնգամյակում կազմել է 38,7 տոկոս, իններորդ հնգամյակում՝ 34,3 տոկոս: 1980 թ. ազգային եկամուտը, 1975 թ. մակարդակի համեմատությամբ, կմեծանա ևս 26 տոկոսով: Սրանք բարձր տեմպեր են: Եվ այդ տեմպերի որոշ նվազումը, որը միանգամայն բացատրելի է այնպիսի պայմաններում, երբ արտադրությունը հասել է վիթխարի մասշտաբների, փոխհատուցվում և ծածկվում է նրանով, որ աճում է յուրաքանչյուր տոկոսի կշիռը: Այսպես, ութերորդ հնգամյակում ազգային եկամտի աճի մեկ տոկոսը գնահատվում էր 2 մլրդ ռուբլի, իսկ ընթացիկ հնգամյակում՝ արդեն 3,6 մլրդ ռուբլի: Այս ամենը խոսում է այն մասին, որ նկատելիորեն մեծանում են ազգային եկամտի բացարձակ աճի չափերը: Ութերորդ հնգամյակում այդ աճը կազմել է 65 մլրդ ռուբլի, իններորդ հնգամյակում՝ 80 մլրդ ռուբլի: 1980 թ. ազգային եկամտի ծավալը 1975 թվականի մակարդակը կգերազանցի 93,5 մլրդ ռուբլով:

Սակայն ազգային եկամտի չափն ինքնին դեռևս լրիվ չի բացահայտում նրա դերը տնտեսական և սոցիալական պրոցեսների զարգացման գործում: Այդ դերը մենք կարող ենք ճիշտ հասկանալ, եթե ազգային եկամտին, ինչպես և ամեն մի հասարակական երևույթի, մոտենանք կոնկրետ- պատմականորեն, այսինքն՝ հասարակական այն հարաբերությունների տեսանկյունից, որոնցում ընթանում է ընդլայնված վերարտադրության պրոցեսը: Ահա թե այդ մասին ինչ է գրել Վ. Ի. Լենինը, քննադատելով բուրժուական այն տնտեսագետներին ու ռեֆորմիստներին, որոնք ազգային եկամուտը կապիտալիզմի պայմաններում դիտում էին ոչ պատմականորեն: ««Ազգային եկամտի» և «ազգային սպառման» հարցը, որը բացարձակապես անլուծելի է այս հարցի ինքնուրույն դրվածքի ժամանակ և որը միայն սխոլաստիկ դատողություններ, բնորոշումներ ու դասակարգումներ է ծնել, միանգամայն լուծվում է այն ժամանակ, երբ վերլուծության է ենթարկված ամբողջ հասարակական կապիտալի արտադրության պրոցեսը: Այդ դեռ բավական չէ. այդ հարցը դադարում է անջատ գոյություն ունենալուց, երբ պարզված է ազգային սպառման հարաբերությունը ազգային արդյունքի նկատմամբ և այդ արդյունքի յուրաքանչյուր առանձին մասի իրացումը» (Երկերի լիակ. ժող., հ. 3, էջ 59):

Սոցիալիստական հասարակության ազգային եկամուտն ստեղծվում է շահագործումից ազատ աշխատանքով և բաշխվում է հասարակության, աշխատանքային կոլեկտիվների, բոլոր աշխատավորների շահերի օգտին: Սակայն այդ շահերը քարացած, մեկընդմիշտ տրված բան չեն: Նրանք կերպարանափոխվում, բարդանում են: Դրան համապատասխան փոխվում են, մասնավորապես, նաև ազգային եկամտի բաղկացուցիչ մասերի կոնկրետ բաժինները: Այսպիսով, սոցիալիստական հասարակարգի պայմաններում պատմական այս կամ այն փուլի համեմատ տարբեր ձևով է արտահայտվում «ազգային սպառման հարաբերությունը ազգային արդյունքի նկատմամբ և այդ արդյունքի յուրաքանչյուր առանձին մասի իրացումը»:

Այս միտքը պարզաբանելու համար հիշեցնենք, որ ազգային եկամուտը բաժանվում է երկու ֆոնդի՝ սպառման և կուտակման: Ուշագրավ է, որ արդի պայմաններում ավելի ուժգնորեն է իր համար ուղի հարթում ազգային եկամտի մեջ սպառման ֆոնդի մեծացման տենդենցը, որը արտացոլում է մեր երկրի հնարավորությունների աճը՝ բավարարելու աշխատավորների շարունակ զարգացող նյութական ու հոգևոր պահանջմունքները, առավել նպաստավոր պայմաններ ապահովելու հասարակության յուրաքանչյուր անդամի համակողմանի զարգացման համար:

1970 թ. փաստորեն գործող գներով սպառման ֆոնդը կազմել է 201,3 մլրդ ռուբլի, իսկ կուտակման ֆոնդը՝ 84,2 մլրդ ռուբլի: Դա նշանակում է, որ սպառման ֆոնդի բաժինը ազգային եկամտի ընդհանուր ծավալում այն ժամանակ կազմել է 70,5 տոկոս: 1975 թ. դրանք կազմել են համապատասխանաբար՝ 266,6 մլրդ ռուբլի և 95,8 մլրդ ռուբլի, որը տալիս է սպառման ֆոնդի բաժնի 73,5 տոկոսը: Պլանավորվում է 1980 թ. սպառման ֆոնդի տեսակարար կշիռը ազգային եկամտում հասցնել մինչև 75 տոկոսի: Ընդմին, սպառման ֆոնդը մեծանում է ոչ միայն հարաբերականորեն, այլև բացարձակորեն: Այսպես, 1965-ից մինչև 1970 թ. այն աճել է 61 մլրդ ռուբլով, 1970-ից մինչև 1975 թ.՝ 65,3 մլրդ ռուբլով: Տասներորդ հնգամյակի ընթացքում սպառման ֆոնդի բացարձակ չափերը կաճեն 76 մլրդ ռուբլով: Ընդմին, սպառման ֆոնդի բաժնի մեծացման հաշվին այդ աճը կապահովվի 7 մլրդ ռուբլով:

Սպառման ֆոնդի մշտական աճը, իսկ որոշակի ժամանակաշրջաններում նաև ազգային եկամտում նրա բաժնի աճը կուսակցության տնտեսական քաղաքականության տևական ստրատեգիական խնդիրների հաջող լուծման անհրաժեշտ պայմանն է, քաղաքականություն, որի բարձրագույն նպատակը աշխատավորների կենսամակարդակի անշեղ բարձրացումն է: Դրա հետ մեկտեղ, երբ ժողովրդի բարեկեցության բարձրացումը դրված է կուսակցության պրակտիկ գործունեության կենտրոնում, է՛լ ավելի հրատապ է դառնում այդ նպատակների համար անհրաժեշտ աղբյուրների ու ռեսուրսների հետագա ընդլայնման ուղիների հարցը:

Այդ ուղիները խորապես ու համակողմանիորեն վերլուծել են ՍՄԿԿ XXIV և XXV համագումարները, դրանց հաջորդած Կենտկոմի պլենումները: Կուսակցությունը նշեց, որ գիտատեխնիկական հեղափոխության պայմաններում աճի էքստենսիվ գործոնների գերակշռությամբ զարգացումն անընդունելի է ներկայիս սոցիալիզմի էկոնոմիկայի համար:Այդպիսի ուղին պահանջում է հարաճուն քանակությամբ թույլ մեքենայացված աշխատանք: Մինչդեռ լրացուցիչ աշխատանքային ուժի ներգրավման ռեզերվները ներկայումս գրեթե լրիվ սպառվել են: Այժմ երկրում աշխատունակների 10 տոկոսից պակաս մասն է միայն, որ զբաղված չէ ժողովրդական տնտե-

յի, մետաղի սպառողների աշխատանքի որակի բարելավման միջոցառումներ։ Ձեռնարկություններին հատկացվող նյութական ռեսուրսների խնայողաբար ծախսումը, խոտանի կրճատումը, մշակման առաջադիմական մեթոդների ու առաջավոր տեխնոլոգիայի արմատավորումը, մի շարք դեպքերում փոխարինիչների օգտագործումը և այլն՝ այս ամենը հումքի և նյութերի դեֆիցիտը պակասեցնելու, արտադրանքի նյութատարությունն իջեցնելու ռեալ ուղիներն են։

Անշուշտ, ամբողջ ասվածով չեն սահմանափակվում աշխատավորների կենսամակարդակի հետագա վերելքի համար հանրային արտադրության արդյունավետության բարձրացման միջոցառումները։ Մեծ ու կարևոր խնդիրներ են ծառացած գյուղատնտեսության, տրանսպորտի, ժողովրդական սպառման արդյունաբերական ապրանքներ արտադրող ճյուղերի առջև։ Անելիքներ շատ կան ժողովրդական տնտեսության կառավարումը կատարելագործելու, արտաքին տնտեսական կապերը զարգացնելու և ամրապնդելու բնագավառում։ Հենվելով սովետական մարդկանց քաղաքական և արտադրական հարաճուն խանդավառության վրա՝ կուսակցությունը հետևողականորեն լուծում է այդ խնդիրները։



Մենք փորձեցինք տասներորդ հնգամյակի մի քանի կարևոր խնդիրների վերլուծության հիման վրա բացահայտել էկոնոմիկայի դերը ՍՄԿԿ XXV համագումարի առաջադրած՝ կոմունիզմի կառուցման սոցիալական պրոբլեմները լուծելու գործում։ Այժմ անհրաժեշտ է ցույց տալ, թե կուսակցության սոցիալական քաղաքականության հարցերի լուծումն ինչ ազդեցություն է ունենում հասուն սոցիալիզմի էկոնոմիկայի զարգացման վրա։

Սովետական բոլոր մարդկանց նյութական բարեկեցության բարձրացումը, նրանց աշխատանքի ու կենցաղի պայմանների բարելավումը, առողջապահության, կրթության և կուլտուրայի նշանակալի առաջընթացը կուսակցության սոցիալական ծրագրի կարևորագույն ուղղություններն ու տարրերն են։ Այդ ծրագրի կենսագործումն անհատի համակողմանի զարգացման, սոցիալիստական ապրելակերպի կատարելագործման նախապայմանն է։ Այդ ծրագրի առանձնահատկությունն առաջին հերթին դրա կոմպլեքսայնությունն է, դրանում առաջադրված խնդիրների մասշտաբայնությունը, որոնց լուծումը նոր էական քայլ կլինի սովետական ժողովրդի կենսամակարդակի բարձրացման գործում։

Բանվորների ու ծառայողների ամսական միջին աշխատավարձը հնգամյակում կաճի 17 տոկոսով և 1980 թ. կկազմի 170 ռուբլի, իսկ կոլտնտեսականների աշխատանքի վարձատրությունը կավելանա 26 տոկոսով և հնգամյակի վերջին կհասնի 116 ռուբլու։ Նախատեսված է բարձրացնել ոչ արտադրական ոլորտում զբաղված 31 միլիոն աշխատողների աշխատավարձը։ Բնակչության ռեալ եկամուտների բարձրացումն զգալի չափով ձեռք է բերվելու սպառման հանրային ֆոնդերի աճի հաշվին։ Այդ ֆոնդերից կատարվող վճարումներն ու արտոնությունները 1980 թ. կկազմեն 117 մլրդ ռուբլի, այսինքն՝ 1975 թ. համեմատությամբ, կավելանան 27 մլրդ ռուբլով կամ 30 տոկոսով։ Միջոցառումներ են նախատեսված կենսաթոշակային ապահովությունը, սոցիալական ապահովագրությունը բարելավելու համար։

Մյուս էական խնդիրը, որ հարկավոր է նկատի ունենալ ՍՄԿԿ XXIV և XXV համագումարների մշակած սոցիալական ծրագիրը բնութագրելիս, նպատակամղված է մեր հասարակության մեջ եղած սոցիալական տարբերությունների հետևողական վերացմանը։ Նոր հնգամյակում նախատեսվում է աշխատանքի վարձատրության ընդհանուր աճի հաշվին բարձրացնել ոչ միայն բնակչության եկամուտները, այլև հատկապես աշխատողների միջին վարձատրվող կատեգորիաների նվազագույն աշխատավարձը, դրույքներն ու ռոճիկները։ Նախատեսված է նաև հասնել հանրային տնտեսությունից կոլտնտեսականների եկամուտների աճի ավելի բարձր տեմպերի՝ բանվորների ու ծառայողների միջին աշխատավարձի աճի համեմատությամբ։ Աշխատավորների և, ամենից առաջ,



ցածր վարձատրվող աշխատավորների եկամուտներին էական հավելում կլինեն սպառման հանրային ֆոնդերից բնակչությանը տրվող վճարումներն ու արտոնությունները։ Դրանց հաշվին իրականացվելու են, օրինակ, սոցիալական այնպիսի միջոցառումներ, ինչպես կանանց մասնակի վճարմամբ արձակուրդի տրամադրումը ծնված երեխային խնամելու համար՝ մինչև մեկ տարին լրանալը, բանվորների ու ծառայողների, ինչպես նաև կոլտնտեսականների նվազագույն կենսաթոշակների բարձրացումը։ Ինչպես տեսնում ենք, ընթացիկ հնգամյակում կուսակցության առաջադրած գործնական խնդիրներն ու պրոբլեմները լիովին համապատասխանում են կոմունիստական շինարարության այնպիսի արմատական նպատակի, ինչպիսին է մտավոր ու ֆիզիկական աշխատանքի մարդկանց, քաղաքի ու գյուղի միջև եղած էական տարբերությունների վերացումը, որով Վ. Ի. Լենինը պայմանավորում էր անդասակարգ հասարակարգի ստեղծումը։

Իսկ որո՞նք են այն հիմնական ուղղությունները, որոնցով կուսակցության սոցիալական ծրագրի իրականացումը ներգործում է էկոնոմիկայի զարգացման վրա։

Պատասխանելով այդ հարցին, հարկավոր է նկատի ունենալ առաջին հերթին հետևյալ սկզբունքային դրույթը։ Մարդը հասարակության գլխավոր արտադրողական ուժն է։ Նա է շարժման մեջ դնում նյութական արտադրողական ուժերը, և արտադրության առաջընթացը որոշվում է նրա ֆիզիկական ու հոգևոր բոլոր պոտենցիաների զարգացման աստիճանով ու բնույթով, որոնք իրականացվում են արտադրության պրոցեսում։ Հասուն սոցիալիզմի հասարակության մեջ սոցիալական պրոբլեմների լուծումը, վերջին հաշվով, նպատակ ունի ամենալավագույն պայմաններ ստեղծել արտադրության, հասարակական կյանքի բոլոր ոլորտներում աշխատավորների համակողմանի զարգացման ու ստեղծարար ինքնագործունեության համար։ Ուստի, կուսակցության սոցիալական ծրագրի իրագործումը, նպաստելով հասարակության գլխավոր արտադրողական ուժի տվյալ պայմաններում առավել հնարավոր զարգացմանը, դրանով իսկ հանդես է գալիս որպես նյութական արտադրության, էկոնոմիկայի աճի հզոր խթան։

Սոցիալական ծրագրի իրագործման տնտեսական նշանակությունն ավելի անմիջականորեն արտահայտվում է այն բանում, որ այդ ծրագրով աշխատավորների նյութական բարեկեցության և կուլտուրայի նախատեսված աճը առաջ է բերում ամբողջ հանրային արտադրության մասշտաբների ու ճյուղային կառուցվածքի փոփոխություններ։ Ինչպես նշեց ՍՄԿԿ XXIV համագումարը «...աշխատավորների բարեկեցության բարձրացումը դառնում է մեր բուն տնտեսական զարգացման ավելի ու ավելի հրամայական պահանջը, արտադրության արագ աճի տնտեսական կարևոր նախադրյալներից մեկը» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 54)։

Այն փաստը, որ բարեկեցության բարձրացումը դառնում է արտադրության արագ աճի տնտեսական նախադրյալը, բացատրվում է մի շարք օբյեկտիվ հանգամանքներով։ Այստեղ նշենք դրանցից մի քանիսը։

Հայտնի է, որ արտադրությունը որոշիչ դեր է կատարում «արտադրություն-սպառում» սխեմում։ Սակայն սպառումը, լինելով արտադրության գոյության անմիջական պատճառը, հսկայական ազդեցություն է թողնում նրա զարգացման վրա։ Այդ ազդեցությունն արտահայտվում է, մասնավորապես, ժողովրդական տնտեսության ճյուղային կառուցվածքի, տնտեսական աճի համամասնությունների առաջադիմական փոփոխությունների մեջ։ Այս հանգամանքն առանձնապես կարևոր է հաշվի առնել այժմ, երբ, ինչպես նշեց ՍՄԿԿ XXV համագումարը, հետզհետե ավելի է սրվում ժողովրդական տնտեսության հաշվեկշռված զարգացման պրոբլեմը։

Արտադրության և սպառման միջև եղած համամասնությունը կարևորագույններից մեկն է ընդլայնված վերարտադրության պրոցեսում։ Արդի պայմաններում, երբ սովետական մարդկանց կենսամակարդակի բարձրացումը գտնվում է կուսակցության պրակտիկ գործունեության կենտրոնում, բնակա-

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԿՐԱԿՈՂ ԳՈՐԾԻՔՆԵՐ

*Խարկովի ավիացիայի ինստիտուտի մասնագետները, օգտագործելով զենքի սկզբունքը, ստեղծել են կրակող գործիքներ: Գնդակին այստեղ փոխարինում է անհրաժեշտ գործիքը: Կինետիկ էներգիան, որը կուտակվում է լիցքավորման ընթացքում, ծախսվում է այս կամ այն տեխնոլոգիական պրոցեսի կատարման վրա:*

*Կրակոց՝ և մետաղական կիսահումքի մակերեսին հայտնվում է դրոշմը: Այդպես են աշխատում* ПИК *տիպի դրոշմիչները: Կրակոց՝ և պողպատե գամը հուսալի միակցում է երկու գերանները: Գամիչ մուրճ-ատրճանակներն ավելի հարմար են և արտադրողական, քան բազմահարված պնևմատիկ մուրճերը: Լենինգրադում անցկացված փորձարկումները վկայում են, որ մետաղական կառուցվածքների նորաձև հավաքմամբ տարեկան կարելի է տնտեսել տասնյակ հազարավոր ռուբլիներ:*

*Խողովակների իմպուլսային լայնացնող սարքը 2—3 անգամ պակասեցնում է ծախսերը ջերմահաղորդիչ ապարատների վերանորոգման ժամանակ: Միաժամանակ այն հնարավորություն է ընձեռում մեծացնելու կցման հուսալիությունը: Իսկ մեծածավալ մասերի անցքերը լայնացնող սարքերը 3—4 անգամ բարձրացնում են արտադրողականությունը:*

## ՄԵԿ-ՏԱՍՆԵՐՈՐԴԱԿԱՆ ՎԱՅՐԿՅԱՆՈՒՄ

*Ֆրանսիայում մշակվել է ներկ, որը լրիվ չորանում է մեկ-տասներորդ վայրկյանում: Գաղտնիքն այն է, որ ներկը հարուստ է պիգմենտներով, մոնոմերներով ու հիմքերով, որոնք նորարարներն անվանել են ֆոտոքիմիական կատալիզատոր: Ներկը չորացնում են ուլտրամանուշակագույն ճառագայթները, որոնք ազդում են կատալիզատորի ինտենսիվացման վրա: Դրա օգնությամբ մոնոմերները վայրկենապես վերածվում են ամուր բարձրմոլեկուլյար միացության:*

*Ներկը հաջողությամբ կիրառվում է շինարարության մեջ՝ առաջացնելով ջրադիմացկուն պոլիմերային պաստառներ: Առավել արդյունավետ է դրանց օգտագործումը տպագրության մեջ: Փորձերը ցույց են տվել, որ դրանք խիստ բարձրացնում են բազմագույն օֆսեթ մեքենաների արտադրողականությունն ու արտադրանքի որակը:*

## ԱՊԱԿԵ ԿԱՀՈՒՅՔ

*Լեհական Սանդոմիր քաղաքի ապակու գործարանն սկսել է թողարկել երեք միլիմետր հաստությամբ ապակեշերտեր, որոնք ութ անգամ ավելի ամուր են, քան սովորական հինգ միլիմետրանոց ապակիները: Այն էլաստիկ է և նույնիսկ ջարդվելիս կտորները սրածայր չեն լինում: Թրծված ապակու տեխնիկական այդպիսի հատկությունները հնարավորություն են ընձեռում այն լայնորեն օգտագործելու կահույքի արդյունաբերության մեջ: Փայտի և կահույքի պատրաստման համար պիտանի այլ նյութերի հետ համեմատած, ապակին ունի անվիճելի մի շարք առավելություններ. հեշտությամբ է լվացվում, չի այրվում, թրթվակայուն է: Ապակուն կարելի է տալ տարբեր ձևեր, օգտագործել փայտի ու մետաղական թեթև տարրերի համակցությամբ:*

## ՏՆԱԿ՝ ՍԱՀՆԱԿԻ ՎՐԱ

*Նովգորոդի մարզի Պեստովի անտառակոմբինատը աշխատանքային բրիգադներին առաջարկում է հարմարավետ տնակ՝ սահնակի վրա: Հեռավոր տեղամասերում հաճախ դժվար է բանվորներին ապահովել կենցաղային հարմարություններով: Իսկ տնակում կարելի է տաքանալ, անբարենպաստ եղանակներից պատսպարվել, ճաշ պատրաստել, հագուստ չորացնել: Արտաքինից այն պատած է պողպատե ֆաներայի բարակ շերտով, ներսից՝ փայտատաշեղից պատրաստված սալերով: Հատակն ու կտուրը ևս տաքացվում են: Ջեռուցման համար օգտագործվում է հեկտեղանի վառարան: Տանն ազատ կարող են բնակվել ութ մարդ: Այլ տեղամաս փոխադրելիս տնակը կցվում է տրակտորին:*